1916 № 10.—Փետրուարի 28 ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ 10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 5 ռուբլի, կէս տարուան 2 ր. 50 կ.։ Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների և հասարակական հիմնարկութեանց համար՝ տարեկան 3 ր., կէս տարուան 2 ր.։ Արտասահման՝ տարեկան 5 ր. կէս տարուան 3 ր.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** Թիֆլիս, Արասպարգեան հրապար. № 7.
**Հեռախօս № 29.**

Պոստի հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** տողին **10** կոպ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։

Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։

Տպագրութեան համար անյարմար Թղթակցութեանց և յօդուածների առթիւ [illegible] իրեն պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։

Կիրակի, 28-ին փետրուարի, ժամը [illegible] Զրկինեանց եկեղեցում կը կատարուի

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

հանգուցեալ ՅՈՎՍԷՓ ԱԹԱԲԷԳԵԱՆԻ յիշատակին, որի մասին յայտնում են սգացեալ այրին՝ Հեղինէ Աթաբէգեանը իր երեխաներով, եղբայրքը՝ Տիգրան, Միքայէլ, Դաւիթ և Ասլան Աթաբէգեանները և քոյր Մ. Յարութիւնեանը։

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## Համաշխարհային պատերազմը

### ՏԱՃԿԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Կովկասեան ճակատում Թիւրքերի հետապնդումը շարունակւում է բոլոր գծերի վրայ։ Ծովամերձ շրջանում Թուրքերը չնայած որ օգնական ուժեր են ստացել, չեն կարողանում ռուսների առաջխաղացութիւնը կանգնեցնել։ Այս շաբթուայ ընթացքում կտրել են մօտ 60 վերստ տարածութիւն՝ ճանապարհին առնելով Ատինա և Րիզէ նաւահանգիստները։ Ներկայումս ռուսները գտնւում են Տրապիզոնից մօտ 50 վերստ հեռու։ Ի նկատի ունենալով Թիւրք զօրքին տիրող սարսափն ու բարոյական լքումը՝ պէտք է Տրապիզոնի առումը մի քանի օրուայ խնդիր միայն համարել։ Այս գծի կռիւներին կենդանի մասնակցութիւն է ցոյց տալիս Սև ծովի ռուս նաւատորմիղը թէ Թիւրքերի ծովափնեայ դիրքերը ռմբակոծելով և թէ զօրք իջեցնելով հարկաւոր վայրերում։ Ատենա նաւահանգիստն օրինակ ափէջքով (դեսանտով) է առնուել, առանց որի ցամաքային զօրքը այդքան արագութեամբ չէր կարող առաջ շարժուել Պոնտական դժուարանցանելի լեռների վրայ։

Կենտրոնական Կարին-Երզնկա գծի վրայ ռուսները գործում են բաւական զգուշութեամբ։ Դրա պատճառը

նախ այն է, որ սրանք որոշ կապ են պահում Թեհրի և կենտրոնի շարժումների միջև, որպէս զի ռազմաճակատը կենտրոնում շատ դուրս չնետուի և ապա այն՝ որ թիւրքերը Երզնկայում երկու զօրաբաժնի (դիւիզիայի) չափ օգնական զօրք են ստացել և այդ հանգամանքը որոշ զգուշութիւն է պահանջում ռուսներից։

Հարաւային, կամ Բաղէշի (Բիթլիս) գծի ամենախոշոր դէպքն է Բաղէշ քաղաքի առումը։ Ըստ երևոյթին թիւրքերը մտադիր են եղել ուժեղ դիմադրութեամբ պաշտպանել այս կարևոր կենտրոնը և բաւական արագութեամբ ժողովել են այստեղ թէ քաղաքի շրջակայքից և թէ Դիարբէքիրից երկու զօրաբաժնի չափ զօրք։ Սակայն չնայած այս հանգամանքին՝ ռուսներին յաջողւում է գիշերային յարձակմամբ դուրս մղել թիւրքերին դիրքերից և կրնկակոխ հալածելով գրաւել քաղաքը։ Գիշերային կռիւներից շատ չախորժող թիւրք զօրքերն այնքան հապճեպ են նահանջում, որ ոչ միայն չեն կարողանում իրենց թնդանօթները հետները տանել, այլև ժամանակ չեն գտնում փչացնելու և պայթեցնելու քաղաքի ամբարպահեստները, որոնք ռուսների ձեռքն են ընկնում 20 թնդանօթների հետ, որոնցից մի քանիսը նոր են ստացուել Կրուպի գործարանից։ Եթէ Տաւրոսի լեռնանցքներում ռուսները արագ յարձակումներով չհալածեն սարսափահար թիւրք զօրքերին՝ նրանք Համիդից (Դիարբէքիրից) օգնական զօրք ստանալով կարող են ամրանալ այս լեռնանցքներում։

Վերջին շաբթուայ կռիւներում, ըստ պաշտօնա[illegible] հաղորդագրութեան, ռուսների ձեռքն են անցել 26 թնդանօթ, մեծ քանակութեամբ ռումբեր, 60 սպայ և 280 ասկեար գերի, չըհաշուած Բաղէշի կռիւներում բռնած գերիները։

Կովկասեան ճակատի անյաջողութիւնները ուղղակի տակն ու վրայ են արել թիւրք-գերմանական ռազմական ծրագրերը։ Ամեն կողմից դէպի Հայաստան են ուղարկւում զանազան նպատակներով կազմած զօրամասերը։

Պարսկական ճակատի վրայ ևս ռուսները շարունակում են իրենց առաջխաղացումը։ Այս շաբաթ նրանք գրաւել են Բիջար և Սինէ քաղաքները. առաջինը գտնւում է Համադանից 70 վերստ հիւսիս-արևելք. իսկ երկրորդը Քիրմանշահից 50 վերստ հիւսիս։

### ԲԱԼԿԱՆԵԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Շարունակւում են սովորական հետախուզութիւնները գլխաւորապէս սաւառնակներով։ Այս շաբթուայ ընթացքում նկատուել է, որ թշնամիները ուժերի մեծ տեղափոխութիւններ են կատարում, թէ Սալոնիկի շրջանում և թէ հարաւային Ալբանիայում։

### ԱՒՍՏՐՕ-ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Արևելեան ճակատի վրայ հետախուզական գործողութիւններ են կատարւում և թեթև ականային կռիւներ, այն էլ գլխաւորապէս Իլլուկստից դէպի հիւսիս։ Վերջին օրերը միայն փոքր ինչ կենդանութիւն է նկատւում Սարինայի շրջանում և Կովել-Ռովնօ երկաթուղու վրայ։ Երկու տեղն էլ գերմանացիները յարձակումներ են կատարել առաջ շարժուելու մտադրութեամբ, բայց յետ են մղուել կորուստներ տալով։

Արևմտեան ճակատն օր ըստ օրէ աւելի է լարում ռազմագէտների ուշադրութիւնը։ Վերդենի տակ կռիւը ոչ միայն շարունակւում է նախկին սաստկութեամբ և չըտեսնուած արիւնհեղութեամբ, այլ և հետզհետէ ծաւալւում, հետզհետէ նոր շրջաններ է ընդգրկում։ Մեր անցեալ տեսութիւնը գրելու ժամանակ գերմանացիք առաջին կատաղի գրոհից յետոյ պահ մի կանգ էին առել, և այդ մենք բացատրեցինք նրանով, որ նրանք նախ իրենց ահռելի կորուստները լրացնելու և ապա կռուի նոր ծրագիր մշակելու պէտք են զգում։ Այս շաբթուայ ընթացքում հանդէս եկաւ այդ նոր ծրագիրը։ Գերմանացիք Դուամոն մարտկոցը ոչնչացնելուց յետոյ շատ քիչ առաջ անցան, որովհետև նրանց դէմ ցցուեցին ֆրանսացոց դաշտային ամրութիւնները։ Յարձակումներ սկսել այս ամրութիւնների դէմ կը նշանակէր մի ձգձգուած դիրքերի կռուի բռնուել, որ միանգամայն անհամապատասխան Վերդէնի դէմ մղուող կռիւների ոգուն։ Վերդէնը գրաւելու համար գերմանացիք բոլոր ռազմաճակատներից, մինչև իսկ Սալոնիկից և ռուսական ճակատներից, զօրքեր և թնդանօթներ են քաշել տարել։ Այս ուժերը պէտք է արագ վերջացնէին առաջադրուած գործը և վերադառնային իրենց տեղերը և չէին կարող ամիսներով կռուել Դուամոնի դաշտային խրամատների դէմ։

Կշռադատելով այս հանգամանքը՝ գերմանացիք Դուամոնի խրամատների առաջ ամրացան և սկսեցին թևերի վրայ գործել՝ Վերդէնը արևմուտքից և հարաւ-արևելքից շրջափակելու դիտաւորութեամբ։ Սա նրանց հին տակտիկն է, որ խոշոր արդիւնքներ է տուել Լիէժի, Նամուրի, Կովնայի, Բրեստ-լիտովսկի կռիւներին։ Վերդէնի մօտ այս տակտիկը յաջողուել է գերմանացիներին առայժմ միայն աջ թևի վրայ։ Նրանք մօտ 15 վերստ ճակատով անցել են Մաաս գետի ձախ ափը և գրաւել բերդի արևմըտեան մարտկոցների առաջ ընկած Ֆորժ գիւղը։ Սակայն այս յաջողութիւնը, որ դեռ էական վտանգ չէ ներկայացնում Վերդէնի համար, սարսափելի զոհեր է տարել գերմանացիներից։ Եւրոպական ռազմագէտները Վերդէնի տակ գերմանացիների մինչև օրս ունեցած կորուստը 100 հազար մարդուց աւելի են համարում։

Մաասի ձախ ափին սկսուած գործողութիւնները մօտեցնում են այն վճռական ճակատամարտի օրը, որի համար պատրաստուել են ֆրանսացիք ամիսներից ի վեր և որին սրտատրոփ սպասում է ամբողջ աշխարհը։

Վերդէնի կռիւներին զուգահեռաբար գերմանացիները յարձակումներ են գործում նաև ֆրանսական ճակա-

տի այլ գծերի վրայ՝ Արգոններում, Վերին Էլզասում, Շամպանիայում են։ Սակայն այս յարձակումները ցուցական (դեմոնստրատիւ) բնոյթ են ստանում, որոնցով գերմանացիք կամ ուզում են կանխել ֆրանսացոց յարձակումները և կամ արգելք հանդիսանալ, որ վերջիններս շատ մեծ ուժեր չկենտրոնացնեն Վերդէնի շուրջը։ Շամպանիայի վերջին կռիւների ժամանակ ֆրանսացիներին յաջողուել է նորից գրաւել մեծ մասն այն խրամատների, որ մի քանի օր առաջ գերմանացիք խլել էին նրանցից և գերել են երեք սպայ ու հարիւրի չափ զինուոր։

# Ներքին տեսութիւն

## ՊԵՏԱԿԱՆ ԿԵԱՆՔ

Փետրուարի 15-ից Պետական Դումայում սկսուեցին գործնական աշխատանքները։ Ընդհանուր ծրագրական վիճաբանութիւնները վերջացել էին նախորդ նիստերում, և հիմա հերթական էին մի քանի կարևոր օրէնսդրական ձեռնարկութիւններ։ Մինչև հերթական հարցերին անցնելը պատգամաւոր Անտոնովը արաւ մի յայտարարութիւն, որ մեծ նշանակութիւն ունեցող մի հարց է շօշափում։ Դա զինուորական ծառայութեան անհաւասար տարածումն է պետութեան բոլոր կողմերի վրայ։ Կան տեղեր և ազգութիւններ—ասաց ճառախօսը,—որոնք ազատուած են զինուորական ծառայութիւնից։ Այժմեան ժամանակ հայրենիքի պաշտպանութիւնը պահանջում է որ նոյն իսկ արտօնութիւն ունեցողներն էլ զինուոր գնան և նրանք գնում են, բայց չեն օգտագործւում նոյն նպատակի համար միլիոնաւոր մարդիկ, որոնք ազատուած են զինուորական ծառայութիւնից։ Այս հանգամանքի վրայ Դուման ուշադրութիւն է դարձրել վաղուց և դեռ 8 տարի առաջ ցանկութիւն է յայտնել որ կառավարութիւնը մշակէ մի նոր կանոնադրութիւն, որով զինուորական ծառայութիւնը տարածուի ամբողջ ազգաբնակութեան վրայ։ Սակայն այդ առաջարկութիւնը մնացել է մինչև այժմ անկատար։ Ուստի ճառախօսը կրկնում է նոյն ցանկութիւնը։ Դուման համակրանքով է ընդունում Անտոնովի այդ յայտարարութիւնը։

Այնուհետև Դուման անցնում է իր մի օրինագծի քննութեան, որ վերաբերւում է զինուորների ընտանիքների ապահովութեան։ Օրինագիծը պետական նպաստի չափն աւելացնում է, և որ կարևորն է՝ նպաստ ստանալու իրաւունք տալիս է իւրաքանչիւր զինուորի առհասարակ այն բոլոր ազգականներին, որոնք նրա աշխատանքով էին ապրում։ Նպաստի իրաւունք ստանում են նոյն իսկ և անպսակ ամուսինները և այդ տեսակ ամուսնութիւններից ծնուած երեխաները։ Օրինագիծն ընդունուեց առանց կրճատումների։ Պետական Դուման դրանով մի հոյակապ ցոյց արաւ հայրենիքի օգտի համար իր կեանքն անգամ զոհելու պատրաստ բանակին։ Ներքին և ֆինանսների մինիստրների օգնականները դիմադրութիւն էին ցոյց տալիս օրինագծի մի քանի կէտերին, առարկելով թէ պէտք է խնայողութիւն անել, թէ չէ պետական գանձարանը պիտի հարիւրաւոր միլիոն ռուբլիների նոր ծախսերի տակ ընկնէ։ Բայց Դուման միահամուռ և ուժեղ կերպով մերժեց այդ առարկութիւնները։ Կռուող զինուորը պիտի վստահ լինի որ իր ընտանիքը ապահովուած է.—այդ նրա իրաւունքն է և նա պետութիւնից ողորմութիւն չէ ստանում, այլ այն, ինչ պետութիւնը պարտաւոր է տալ նրան։ Ռուսաստանն օրեկան 30 միլիոն ռուբլի է ծախսում պատերազմի վրայ և նա չի քանդուի, եթէ մի քանի միլիոն էլ իրան պաշտպանող զինուորների ընտանիքներին տայ։ Այսպէս էին խօսում պատգամաւորները, և կառավարութեան ներկայացուցիչների ոչ մի առաջարկութիւնն էլ չանցաւ։

Այնուհետև Դուման անցաւ կօօպերատիւ կազմակերպութիւնների հարցին։ Թանգութեան դէմ կռուելու ամենալաւ միջոցն է կօօպերացիայի ամենալայն զարգացումը։ Եւ Պետական Դուման որոշում է կայացնում մշակելու մի ընդհանուր օրէնսդրութիւն կօօպերատիւ կազմակերպութիւնների համար, մի օրէնսդրութիւն, որ նրանց բարգաւաճման և ընդարձակման կը ծառայէր, վերացնելով այն արգելքները, որոնց հանդիպում էին այդ տեսակ ձեռնարկութիւնները կառավարութեան կողմից։ Առևտրի մինիստր Շախովսկոյն ասաց թէ կառավարութեան կողմից կօօպերացիաները արգելքի չեն հանդիպի, եթէ միայն զուտ տնտեսական հաստատութիւններ և քաղաքական գոյն չը ստանան։ Հարցը յանձնուած է առանձին յանձնաժողովի, որ պիտի մինչև երկու շաբաթը ներկայացնէ զեկուցում։

Հետևեալ նիստին, որ կայացաւ փետրուարի 16-ին, Դուման ձեռնարկեց իր զբաղմունքների գլխաւոր առարկային—պետական բիւջէի քննութեան։ Բիւջէտային յանձնաժողովի կողմից զեկուցում արաւ Ֆիրսովը։ Սովորական մուտքի և ելքի հաշուեկշիռը այսպէս է ներկայանում.— մուտք սպասւում է 3,558,156,510 ռ.։ Ծախսը մուտքից աւել է 377,107,192 ռուբլով։ Այս դեֆիցիտը պէտք է ծածկուի փոխառութիւնների միջոցով։ Պատերազմական ծախսերը առանձին են և չեն մտնում այս հաշուեկշռի մէջ։ Անցեալ 1915 թ. պատերազմական ծախս եղել է 8 միլիարդ ռուբլի, իսկ այս տարի, եթէ պատերազմական գործողութիւնները շարունակուին մինչև վերջը, ծախս կը լինի արդէն 11 միլիարդ ռուբլի։ Պատերազմի սկզբում իւրաքանչիւր օր ծախսւում էր 10 միլիոն ռուբլի, իսկ այժմ ծախսւում է 30 միլիոն։ Որքան և ծանր լինեն այս ծախսերը, պատերազմը պէտք է, ի հարկէ, շարունակել մինչև ցանկալի վախճանը։ Երկիրը կը դիմանայ այդ ծանրութեան, քանի որ երկիրը օժտուած է բնական հարստութիւններով։ Ամենագլխաւորը երկրագործութիւնն է։ Անցեալ տարի Ռուսաստանը կորցրեց 2 միլիոն դեսեատին վարելահող, բայց ունեցաւ շատ լաւ հունձք։ Արդիւնաբերութիւնն էլ կրճատուել է մի փոքր մասով, բայց դրա փոխարէն գները թանգացել են և գործարանները մեծ պատուէրներ են ստանում բանակի պէտքերի համար։ Թէ որքան աւելացել է փողի քանակութիւնը երկրի մէջ, ցոյց է տալիս այն, որ պետական բանկն ընդունել է պահելու համար մի չը տեսնուած գումար—800 միլիոն ռուբլի։

Ֆինանսների մինիստր Բարկը մի ճառի մէջ բացատրում է պետութեան ֆինանսական քաղաքականութիւնը։ Ցոյց տալով պատերազմական դժուար ժամանակների պահանջած արտակարգ ծախսերի կատարելիք դերը պետական տնտեսութեան մէջ, մինիստրն ասում է թէ պատերազմից յետոյ հարկաւոր կը լինի դիմել այնպիսի միջոցների, որոնք կը կանոնաւորեն բիւջէն, այսինքն՝ կը վերացնեն դեֆիցիտները։ Դրա համար կայ երկու ճանապարհ։ Առաջինն է խնայողութիւնը. ելևմտական բարեբախտութիւն ստեղծել աւելորդ ծախսեր չանելով, կարիքները կրճատելով և առհասարակ նորանոր ծախսից փախուստ տալով։ Միւս ճանապարհն է՝ զարգացնել երկրի արդիւնաբերական կարողութիւնը, լայն ճանապարհ բաց անել ժողովրդի տնտեսական ինքնագործունէութեան համար, մի խօսքով՝ երկրի հարստացումը։ Այս երկրորդ ճանապարհով էլ, ասաց մինիստրը, կերթայ կառավարութիւնը։ Դուման ծափահարութիւններով ընդունեց այդ յայտարարութիւնները։ Այնուհետև մինիստրն ասաց թէ իւրաքանչիւր պատերազմի անխուսափելի չարիքն է թղթադրամների չափից աւել բաց թողնելը։ Այդ չարիքը մասամբ կարելի է չէզոքացնել փոխառութիւնների միջոցով։ Մինչև այժմ պետական գանձարանը ներքին փոխառութիւններով և այլ ֆինանսական միջոցներով ստացել է ազգաբնակութիւնից $4\frac{1}{2}$ միլիոն։ Այժմ նոր ներքին փոխառութիւն է ձեռնարկւում։ Նախընթաց փոխառութիւնը (մի միլիարդ) ծածկուեց կարճ միջոցում։ Այս հանգամանքը

մէկ երկու անգամ հրամանքիդ յիշումն տուեց, ծառայդ քոյդ կողմանէ լաւապէս շնորհակալութիւն մատուցի և ասի ունի յատուկ ջանք որ մեր քրիստոնեայ ազգն ամենն բերել առ ի մէջի ձերին տէրութեան, և շնորհակալ եղև։ Խնդրեմ որ տէրութիւնդ զանց չառնես, ջանք դնես, լինես կատարող խնդրանաց մերոց»։ Այդ ժամանակն էլ արդէն որոշուած էր որ գաղթավայր պիտի դառնար Ախալցխան, որովհետև նամակագիրը յարում էր և հետևեալը. «Ես ծառայ եմ, այս ես ծանուցանեմ յարգութեանդ որ Ախալցխայ հանդիպեցայ, շատ լաւապէս բարեբեր երկիր է, թէ գիւղորայքն, թէ Ախալցխայ ամենն բարեբեր է»։

Ռուսաց պաշտօնական աղբիւրները հաւաստիացնում են որ սպասուող 8 հազար տան փոխարէն գաղթեցին 14 հազար տուն կամ ընդհանուր առմամբ 90 հազար հոգի։ Այս ահագին հոսանքը վարում էին երկու արքեպիսկոպոսներ—Ստեփանոսը Կարսից և Կարապետը՝ Էրզրումից։ Աւելի կարևոր էր այս երկրորդի դերը։ Գաղթականների ամենամեծ քանակութիւնը—7298 ընտանիք—Էրզրումից էր և նրա գաւառներից. այնուհետև գալիս էր Բայազիտի գաղթականութիւնը՝ 4121 ընտանիք, յետոյ միայն Կարսինը՝ 2467 ընտանիք։

Թիւրքաց կառավարութիւնը, իհարկէ, անտարբեր չը մնաց այսպիսի քանակութեամբ հեռացող աշխատաւոր և շինարար ժողովրդի վերաբերմամբ և մի շարք միջոցներ գործադրեց գաղթականութեան առաջն առնելու համար։ Սուլթանի կողմից խոստումներ եղան այն բարիքների մասին, որ պիտի վայելէր ժողովուրդը, մնալով իր երկրում։ Կ. Պոլսի հայոց պատրիարքի յանձնարարութեամբ Էրզրում գնաց Բարդուղիմէոս արքեպիսկոպոսը՝ խրատելու, յետ կանգնեցնելու համար։ Ռուս հրամանատարներից մէկը՝ գեներալ Պանկրատիև, որ զինուորական նահանգապետ էր Էրզրումում, պատմում է թէ ինքը, որպէսզի ցոյց տայ որ ժողովուրդը իր յօժար կամքով է գաղթում, տարաւ իր հետ Բարդուղիմէոս արքեպիսկոպոսին մինչև Բասեն և ամենայն ազատութիւն տուեց խրատելու և համոզելու։ Բայց գաղթականների ահագին խմբեր անդրդուելի մնացին... «Եթէ ինքը Քրիստոսը,—ասում էին,—իջնէ երկնքից համոզելու որ մնանք օսմանցիների ձեռքին, մենք նրան էլ չենք լսի»։ Այնուհետև էլ, երբ գաղթականները հաստատուել էին ռուսական հողի վրայ, Թիւրքիայից գաղտնի գործակալներ էին գնում նրանց մօտ, համոզելու որ մաս-մաս, փոքրիկ խմբերով վերադառնան հայրենիք։ Բայց ռուսաց կառավարութիւնը խստիւ արգելեց վերադարձը, սպառնալով զինուորական դատարանին յանձնել ամեն մէկին, որ ռուսական սահմանն անցնելու փորձ կանէր։

Ժողովրդական ահագին զանգուածների տեղափոխութիւնը հեշտ իրագործելի ձեռնարկութիւններից չէր։ Ռուսաց կառավարութիւնը նորանոր խոշոր գումարներ էլ բաց թողեց (ընդամենը սկզբից մօտ 700 հազար ռուբլի), ամեն տեսակ դիւրութիւններ տուեց, ձրի բաժանեց հաց, ալիւր, շինութեան նիւթեր, արհեստները վերսկսելու և զարգացնելու համար հարկաւոր միջոցները և վեց տարով էլ ազատեց նրանց ամեն տեսակ հարկերից։ Բայց և այնպէս, գաղթականները մեծամեծ նեղութիւններ կրեցին. կորցրին իրանց ստացուածքների մեծ մասը, կոտորուեցին հիւանդութիւններից։ Այս դրութեան մի անպաճոյճ նկարագիրն էին տալիս Ազգոր գիւղի հայ գաղթականները 1831 թ. դեկտեմբերի 24-ին գրած իրանց մի խնդրագրի մէջ.

«Կամիմք ծանուցանել տէրութեան ձերում որ Արզրումայ ելած ժամանակներուս յոյժ նեղութիւն կրեցինք թէ Ղարս և թէ Արփաչային մնալով, զամենայն ինչսն մեր վատնեցինք, մնացինք խեղճ ողորմելի, այնչափ մնացինք որ արևակէզ լինելով և ունեցած թէ փող և հագուստ, բոլորն ոչնչացաւ, վերջը եկանք Ախալցխայ, բնակութիւն չունենալով մնացինք դուրսը, հիւանդութիւն պատահեց, մեծաւն մեռաւ և մնացեալն մէկ էգը Ախլցխայ տեղուց ըրին և մեզ ոչ հրաման ըրին գնալ Ազգոր այս խօսքով թէ ինչ պակասութիւն ունիք ի սէր Աստուծոյ կարող եմք լինել» 1)։

Այսպէս թէ այնպէս, գաղթական ժողովուրդը հաստատուեց երեք տեղերում. բայազէտցիները՝ Սևանի լճի ափին, ուր և հիմնեցին Նոր Բայազէտ քաղաքը, կարսեցիները՝ Գիւմրի (Ալէքսանդրապոլ) և նրա շրջաններում, էրզրումցիները Ախալցխայի և Ախալքալաքի գաւառներում։

Գաղթականութիւնը, թէև այնքան ընդարձակ չափերով, իհարկէ միանգամայն չը սպանեց հայ ազգաբնակութիւնը Էրզրումի, Կարսի շրջաններում, այլ միայն սաստիկ նուազեցրեց նրան։ Երկիրը ահագին հարուած էր ստանում այդ տեղափոխութիւնից։ Բայազէտը համարեա ամայացաւ, Էրզրումը կորցրեց իր առաջնակարգ տնտեսական նշանակութիւնը։ Արհեստները խլացան, առևտուրը փոքրացաւ, հողագործութիւնը աննշան չափերի հասաւ։ Նուազեց նոյն իսկ և մահմեդական ազգաբնակութիւնը։ Հարիւր հազարից աւել մարդ ունեցող քաղաքը համարեա կիսով չափ դատարկուեց։

Ժամանակի ընթացքում այս հատուածները կամաց կամաց սկսեցին բազմանալ։ Ազգաբնակութիւնը աւելացաւ, թէև նախկին թուերին չը հասաւ... 1870 թուականների առաջին կէսում մահմեդականների թիւը (արական սեռի) Էրզրում քաղաքի մէջ հաշւում էր 23 հազար հոգի։

(Կը շարունակուի) Լէօ

## ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆՆԵՐԸ ՇՈՒԷՅՑԱՐԻԱՅՈՒՄ *)

(Վերջ)

II

Բարեգործութիւնը արտասահմանում առհասարակ, Շուէյցարիայում մանաւորապէս, ցրուած է, ինչպէս աշխատեցի պարզել նախկին յօդուածումս, տրուած է լայն և հասարակական հողի վրայ։ Նա ձգտում է նիւթական օգնութիւն հասցնել կարօտեալներին, միայն արժանավայել ձևով։ Դրա համար գործում են բազմաթիւ հաստատութիւններ, բայց ես հարկաւոր համարեցի համառօտ տեղեկութիւններ տալ միմիայն գլխաւոր հաստատութիւնների մասին։

L'Asile de vieillards pauvres et malheureux de Lausanne. «Լօզանի չքաւոր և դժբաղդ ծերունիների ապաստարանը» գտնւում է քաղաքից դուրս գեղեցիկ վայրում։ Այնտեղ ընդունւում են ծերունիներ 65 տարեկանից ոչ պակաս, որոնք իրենց ընտանիքում հնար չունեն ստանալ ինչ որ իրենց պէտք է։ Ապաստարանում իւրաքանչիւրն ստանում է յարմար անկողին, մաքուր շորեր և առատ սնունդ։ Առաւօտեան սուրճ կաթով, կէս օրին ապուր, միս, բանջարեղէն և մի բաժակ գինի. ժամի 3-ին դարձեալ սուրճ կաթով և երեկոյեան ընթրիքին որև է տաք կերակուր։ Հաց տրւում է որքան ուզում են։ Այդ բոլորի համար ամսական վճարում են 20 ֆրանկ—հազիւ 8 ռ. մեր դրամով։ Աշխատանքի ընդունակ ծերունիներին, իրանց ույժի համեմատ գործ է տրւում այգում կամ տանը։ Ծերունիները շատ բախտաւոր են զգում իրենց այդ ապաստարանում և ուրախութեամբ մտնում են այնտեղ։

«L'asile Jouis Boissonnet pour convalescents et valétudinaires». «Թոյլ և հիւանդոտների ապաստարան ի յիշատակ Լուի Բուասոննէի»։ Այդ հաստատութեան նպատակն է ընդունել նոր ապաքինուած հիւանդներին և առհասարակ թոյլերին, որոնք չեն կարողանում աշխատել և տանը զրկուած լինելով խնամքից չեն կարող կազդուրուել։

«Ében Hézer». «Էբէն Էզէր» ընդունում է անբուժելի հիւանդներին և ապուշներին (իդիօտներին)- 15-ից մինչև 30 ֆրանկ ամսավճարով։ Մարդու վրայ շատ ծանր տպաւորութիւն

1) Ձեռագիր։

*) Տես „Համբաւաբեր" № 4։

*մակերպութեան նպատակն է՝ փրկել օտարութիւն °գնացող ջահել օրիորդներին կեանքի փորձանքներից։ Երկաթուղիների վագոնների և շոգենաւերի պատերից կախուած են երկար ցուցակներ այդ ընկերութեան անդամուհիների, որով առաջարկւում է ճանապարհորդող օրիորդներին դիմել դրանց հովանաւորութեանը և չը լսել շողոմարար անծանօթ մարդկանց։*

*Անդամուհիները պարտաւորւում են ամեն տեսակ աջակցութիւն ցոյց տալ օրիորդներին, նոյն իսկ ծայրայեղ դէպքում ընդունում են նրանց իրանց տանը և առհասարակ մօր դեր են կատարում։ Այդպիսով շուէյցարացի մայրերը միանգամայն հանգիստ սրտով թողնում են իրանց ջահել աղջիկներին մենակ ճանապարհորդելու։*

«Société de secours mutuels pour femmes». *«Կանանց փոխադարձ օգնութեան ընկերութիւն». ապահովագրական ընկերութեան պէս մի հաստատութիւն է։ Անդամագրուել կարող են բոլոր կանայք 16-ից մինչև 40 տարեկան հասակը, որոնք պարտաւորւում են ամսավճար տալ այն չափով, որ կը սահմանի ընդհանուր ժողովը։ Հիւանդութեան դէպքում անդամները ստանում են ձրի բժշկական օգնութիւն և ապրուստի համար նպաստ մինչև ապաքինուելը։*

*Կայ մի հետաքրքրական ընկերութիւն ևս, որի կանոնադրութիւնը ես չըկարողացայ ձեռք բերել և անունն էլ չեմ յիշում, բայց նպատակն է ծուլութեան առաջն առնել։*

*Ընկերութեան անդամները պայմանաւորւում են զանազան հաստատութեանց, արհեստանոցների և մասնաւոր արհեստաւորների հետ, որ եթէ մէկին ուղարկեն նրանց մօտ, անպատճառ գործ տրուի, իսկ վարձատրութիւնն ստացուի ընկերութիւնից։*

*Ընկերութիւնից աշխատաւորն ստանում է տոմսակ, որի վրայ գործ տուողը մակագրում է, թէ այսքան ժամ կամ օր աշխատեց, բառ դրում և վարձատրւում է։ Եթէ դիմողը ոչ մի մասնագիտութիւն չունի, նրան ուղարկում են փայտ կոտրատելու, փողոց աւլելու և այլ թեթև գործեր կատարելու։ Ուրեմն ոչ ոք կարող չէ ծուլանալ կամ ուրիշի հաշուով ապրել։ Բացի վերոյիշեալ հաստատութիւններից շատ կան դաստիարակչական յատուկ ընկերութիւններ, բանուորական կազմակերպութիւններ, խնայողական դրամարկղներ և այլն...*

*Այդպիսով ամեն ինչ նախատեսնուած է Շուէյցարիայում, և ամեն մի շուէյցարացի այս կամ այն ձևով մասնակցում է բարեգործութեան։*

*Շատ հնարագէտ են շուէյցարացիք իրանց հաստատութիւնների համար փող ճարելու։ Ամեն ինչ օգտագործում են, ամեն բանից օգուտ են քաղում։ Հաւաքում և ծախում են հին նամակադրոշմներ, շոկոլադի կապարեայ թղթեր, պապիրոսի մնացորդներ, շիշեր, արկղներ և այլն... Օրինակ* «Asile des billodes» *(մի որբանոց է այդ) տարեկան 4000—5000 ֆրանկի հին նամակադրոշմներ է ծախում։ Շուէյցարացի ամեն մի ընտանիք հաւաքում է նամակադրոշմներ և ուղարկում այդ որբանոցը։*

*Համարեա ամեն մի տան մէջ դրուած են արկղներ, ուր դարսում են իրանց անպէտք զանազան առարկաներ, որ յետոյ դրամի է վերածւում յօգուտ բարեգործական հաստատութիւնների։* *)

*Իշխ. Մ. Թումանեանց*

———

*) *Շատ անգամ մեզ անպէտք եղած և դէն քցելու իրերից էլ կարելի է և մեզնում բարի գործ կատարել։ Իւրև (Դորպատ) քաղաքում բնակիչները լուցկու դատարկուած տուփերը հաւաքում են և վերադարձնում գործարանին, որով ամբողջ քաղաքը կարողանում է մի ուսանող պահել համալսարանում։ Այս հաշուով Թիֆլիսը կը կարողանար անշուշտ 5—10 ուսանող պահել։*

*Ծան. խմբագրութեան*

## Կ. Հ. Բ. Ը-ԹԵԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆՆԵՐԸ *)

I

### ՀԻՒԱՆԴԱՆՈՑ

—

*Հիւանդանոցի պաշտօնական բացումը տեղի ունեցաւ 1914 թ. հոկտ. 24-ին։ Այդ առթիւ հիւանդանոցի շէնութեան մէջ նախ հոգեհանգիստ կատարուեց պատերազմի դաշտում ընկած վիրաւոր զինուորների համար և ապա մաղթանք՝ հայ հոգևորականութեան կողմից Մեսրոպ եպիսկոպոսի գլխաւորութեամբ։ Հոգեհանգստին և մաղթանքին ներկայ էին՝ կոմսուհի Վորոնցով-Դաշկովան, Թիֆլիսի նահանգապետ պ. Մարտինովսկին, քաղաքագլուխ Ա. Խատիսեանը, ոստիկանապետը և այլ բարձրաստիճան անձինք ու հիւրեր։*

*Այնուհետև հիւանդանոցն սկսեց իր գործունէութիւնը շնորհիւ կանանց կոմիտէի ջանասիրութեան և տ. Մարգարիտ Եղիազարեանի եռանդոտ աշխատանքի, որը հիւանդանոցի բացման օրից ձրիաբար աշխատում է և վարում նրա գործավարական մասը։*

*Թիֆլիսի քաղաքային գործադիր յանձնաժողովի որոշմամբ Բարեգործական Ընկերութեան հիւանդանոցը կոչւում է № 6 հիւանդանոց։*

*Հիւանդանոցի գաղափարին համակրում է հայ հասարակութիւնը և ամենքը օգնութեան են գալիս։*

*Հիւանդանոցը բացուելուց առաջ և յետոյ սկսւում են առատ նուիրաբերութիւններ մասնաւոր անհատներից և հիմնարկութիւններից։*

*Որոշւում է բացի սովորական նուէրներից ընդունել նաև այլ և այլ իրեր՝ հիւանդանոցը փակուելուց յետոյ վերադարձնելու պայմանով։*

*Նուիրաբերութեան գործը կանոնաւորելու համար յանձնաժողովը վարւում է հետևեալ ձևով.*

*Նա հաշւում է, որ ամեն մի մահճակալի կահաւորումը կարժենայ 75 ռ., իսկ ամեն մի հիւանդ զինուորի պահպանութիւնը, հաշուելով նաև բժշկական օգնութիւնը, օրական 1 ռ. 20 կ., որ է ամսական 36 ռ.։*

*Հիւանդանոցում նուիրատուներին մահճակալ պահելու դիւրութիւն ընձեռելու համար որոշւում է, որ նուիրատուն միանուագ վճարէ կահաւորման համար 75 ռ., իսկ այնուհետև պահպանութեան համար ամիսը 36-ական ռ.։ Մահճակալներն ունեն համարներ, ուր և նշանակուած է նուիրատուի անունը։*

*Բացի այդ, որոշւում է հիւանդանոցում պահել առանձին բաժանմունքներ (պալատներ) մի քանի մահճակալներից բաղկացած։ Այսպէս՝ բացուեց մէկ պալատ Թիֆլիսի հայ տիկնանց 12 մահճակալով, մէկ պալատ Թիֆլ. Առևտրական բանկի ծառայողների 3 մահճակալով։*

*Կարճ ժամանակի ընթացքում բոլոր պալատների 6 առանձին մահճակալների վճարները յանձն են առնում զանազան անձինք և հաստատութիւններ։ Մինչև անգամ Թիֆլիսից դուրս գտնուած վայրերից շատերը յանձն են առնում մահճակալների ծախսը։*

*Հասարակութեան այդ գովելի վերաբերմունքից քաջալերուած՝ Բարեգործական Ընկերութիւնն էլ իր կողմից ոչ մի միջոց ու ջանք չխնայեց հիւանդ և վիրաւոր զինուորներին խնամելու գործը լաւ պայմանների մէջ դնելու։*

*Եւ այդ է պատճառը, որ ընկերութեան տան ամբողջ վերին յարկը, որ պատերազմից առաջ ընկերութեան պահպանութեան աղբիւրներից մէկն էր, ամբողջովին յատկացրեց հիւանդանոցին։*

*Այդ շէնութիւնը, որ սկզբներում երեկոյթների, դասախօսութեանց և ներկայացումների համար էր և ուր տեղաւորւում էր հասարակական ակումբը, բաղկացած է մի մեծ դահլիճից և 7*

———

*) *Տես «Համբաւաբեր» № 6։*

հատ ընդարձակ սենեակներից։ Այդ շէնութիւնը իր առաջ գըտնուած ընդարձակ հրապարակով և քաղաքային գեղեցիկ պարտէզով այցելուի վրայ հաճելի տպաւորութիւն է թողնում։ Արտաքինի հետ միասին ներքինն էլ շատ գեղեցիկ է։ Թարմ օդը, առատ լոյսը և մաքրութիւնը հիւանդանոցի անհրաժեշտ պայմաններն են։ Աչքի է ընկնում հիւանդանոցի անդամահատութեան սենեակը, լողարանը, դեղատունը և այլն։ Հիւանդանոցի մէջ գտնւում է բեմ, ուր հիւանդների համար ներկայացումներ և երեկոյթներ է կազմակերպւում։

Առանձնապէս ուշք են դարձնում հիւանդանոցի մաքրութեան և հիւանդների կերակրի վրայ։ Սովորական հիւանդներին ճաշին տրւում է 2 տեսակ կերակուր, երեկոյեան՝ ընթրիք և առաւօտ ու երեկոյեան՝ թէյ, իսկ կիրակի օրերը ճաշերին՝ 3 տեսակ։

Դժուար հիւանդներն առանձին խնամք են վայելում և նրանց տրւում է աւելի թեթև և դիւրամարս կերակուրներ՝ կաթ, մածուն, ձու, ի հարկին գինի և այլն։

Բժիշկը ամեն օր այցելում է հիւանդանոցը, հսկում է մաքրութեանը և կերակուրներին, քննում է հիւանդներին, առողջներին արձակում է, ընդունում է նոր հիւանդներ և այլն։

Հիւանդներին արձակելու և նորերին ընդունելու համար պահւում են առանձին մատեաններ, որտեղ նշանակւում են հիւանդութեան տեսակը, առողջանալու պարբերական պատճառները և այլն։

(Կը շարունակուի)

## ԳԱՒԱՌ

ԴՊՐՈՑԱԿԱՆ ԳՈՐԾԸ ՂԱՓԱՆՈՒՄ. —Մի որևէ ժողովրդի, ազգի կամ հէնց մի որևէ գաւառի կրթական գործին ծանօթանալու համար անհրաժեշտ է նախ ծանօթանալ նրա տնտեսական դրութեան հետ։ Կրթականը սերտ կապ ունի տնտեսականի հետ։ Այնտեղ է կրթութիւնը լաւ հիմքերի վրայ դրուած, այն ժողովուրդն է կրթականով տարւում, որը տնտեսապէս ապահով է, թէպէտ minimal չափով։

Բայց յաճախ փաստերը հակառակն են ցոյց տալիս։ Իսկ այս դէպքում ոչ թէ տնտեսականի ու կրթականի հակադրութիւնն է պատճառը, այլ այն՝ թէ տւեալ ժողովուրդը ինչպիսի սէր, ձգտում ունի դէպի այն։ Այստեղ ցեղի կամ ազգի հարցն է գլխաւոր դերակատարը։

Քաղաքակիրթ աշխարհներում, օրինակ Անգլիայում, Ֆրանսիայում, Ամերիկայում և վերջապէս Գերմանիայում, որը գիտութեան աշխարհն է համարւում ներկայումս, երբէք կրթութեանը երկրորդական տեղը չի տրուել, ինչպէս այդ մեզնում է, այլ երկուսն էլ՝ կրթականն ու տնտեսականը առաջ են տարուել հաւասարապէս ու մէկը չի զարգացել ի վնաս միւսի։

Բայց այսպէս չէ վայրենի ու բարբարոս ազգերի մէջ։ Որքան էլ քիւրդը, թիւրքը տնտեսապէս ապահով վիճակում լինեն, այնուամենայնիւ նրանց համար կողոպուտը, աւեր-թալանը, կոտորածները գերագոյն տեղ են բռնում։ Գոնէ այդ է ասել մեզ դարերի պատմութիւնը։ Կայ և մի պայման, այդ էլ ազգերի շփումն է քաղաքակիրթ ազգերի հետ։ Ահա հէնց այդտեղ է երևան գալիս որևէ ազգի իսկական յատկանիշը։

Թուրքը, Ասիայի խորքերից գալով, որպէս բարբարոս ազգ, փոխանակ ընդօրինակելու ասորական, յունական, հռոմէական կուլտուրաները, աւերել, ոչնչացրել է նրանց բարձր կուլտուրան։ Այնուհետև էլ—նա ապրելով Եւրոպայում ու շփման մէջ մտնելով քաղաքակիրթ ազգերի հետ—դարձեալ մնացել է նոյն բարբարոս, անկուլտուր ժողովուրդը։ Իսկ հայը, որ դարեր շարունակ ենթակայ է եղել այդ բարբարոսների հալածանքներին, որոնք աւերել են ամեն ինչ —դարձեալ հայը իր սուգի օրերում այնքան սէր, ձգտում ու ընդունակութիւն է ունեցել, որ ուրիշից ընդօրինակելով և իւրացնելով սեփական կուլտուրայ է ստեղծել։

Շատ հեռուն չը գնանք, խօսենք ներկայից։

Ղափանը Կովկասի ծայրագաւառներից մէկն է։ Այնտեղ ապրում են երկու ազգութիւն՝ հայ և թուրք։ Երկու ազգութիւնները Ղափանում գտնւում են նման պայմանների մէջ։ Հաղորդակցութեան ճանապարհներից զուրկ, կուլտուրական կենտրոններից ու ազգերից հեռու։ Տնտեսութիւն ունենալու նոյնանման աղբիւրներ, որ են՝ հողագործութիւն և գաւառի բնական հարստութիւնը՝ պղնձահանքերը։ Հանքերի բանուորութեան մեծ տոկոսը թիւրք են, արգաւանդ և բերրի տափաստանները նրանցն են։ Այդ և անասնապահութիւնը մի առաւելութիւն է հայերի նկատմամբ, որի շընորհիւ և Ղափանի թիւրք տարրը տնտեսապէս մի քանի անգամ բարձր է հայից։ Բայց ինչ վիճակում է թուրքերի կրթական գործը։ Հազիւ 15-20 գիւղին ընկնում է մի դպրոց, իսկ 36 հայաբընակ գիւղերից միայն 8-10 չունեն։

Մասնաւորելով մեր խօսքը, այժմ տեսնենք, ինչպիսի հիմքերի վրայ է դրուած կրթականը հայերի մէջ Ղափանում։

Ղափանը, ինչպէս ասացինք, իսկապէս կտրուած է դրսի աշխարհից. չունի ճանապարհների կանոնաւոր հաղորդակցութիւն, որով ժողովուրդը տնտեսութեան պակասը ներմուծում է դրսից, իսկ աւելին արտահանում է։ Իսկ հողի անբերրութիւնը ժողովրդին զրկում է տարուայ պաշարն ստանալուց։ Պակասը մի կերպ լրացնում է հանքերից—օրավարձ ստանալով։

Այդ միջոցով ղափանցին թէ ապրում է և թէ դպրոցներ է պահում։

Ինքնին հասկանալի է, որ մի կերպ տնտեսութիւն հայթայթող ժողովրդի համար որքան դժուար է դպրոցների ամբողջ տընտեսականը իր ուսերի վրայ տանել։ Որքան ժողովուրդը գիտակցութեան հասած լինի, որքան նա կրթութիւնը անհրաժեշտ պահանջ համարէ, այնուամենայնիւ, երբ նրա առաջ ծառացած է ընտանիքի մերկութիւնը, նա կամայ-ակամայ պէտք է կրթութեանը երկրորդական տեղը տայ, որովհետև քաղցած փորով կարդալն անհնար է։ Ահա հէնց այստեղ է, որ բարեգործութիւնը գալիս է իր պարտքը կատարելու—յագեցնելու ուսումնածարաւ ժողովրդի ծարաւը։

Եւ Ղափանը՝ շնորհիւ բարերարների, պահում է մի շարք ծխական դպրոցներ։

Դպրոցները նիւթականի նկատմամբ շատ խղճուկ վիճակում են։ Եւ այդ նախ հետևանք է ժողովրդի տնտեսական անապահով վիճակի և երկրորդ՝ բարերարների երերուն դրութեան։ Բայց չընայած այդ բացերին, էլի Ղափանի հայ ժողովուրդը մեծ սէր է ցոյց տալիս դէպի կրթութիւնը և ձգտում է հաստատուն պահել դպրոցները։

Սակայն եթէ մեր նպատակն է ժողովուրդ կրթել, դրանով չպիտի սահմանափակել կրթութեան գործը։

Ի՞նչ է մնում անելու. ահա թէ ինչ։ Ունենալ Ղափանում մի հայկական եթէ ոչ միջնակարգ, գոնէ չորսդասեան դպրոց, որտեղ վերջացնող աշակերտութիւնը հնարաւորութիւն ստանար մի որևէ գործ ձեռնարկելու։ Իսկ այդ անողը Հոգևոր Իշխանութիւնը պէտք է լինի, քանի որ նա է նրա տնօրինողը ու ձեռքի տակ ունի ուսումնարանական ֆոնդ։

Այդ է պահանջում ժամանակը և ուսումնածարաւ ժողովուրդը։

Գաետտա

***

ՍՈՒԼՏԱ (Ախալքալաք), 14-ին փետրուարի.—Բաւականին երկար ժամանակ է, ինչ գիւղումս տարածուել է կարմրուկ հիւանդութիւն, բոլոր երեխաները բռնւում են. սկզբնական շրջանում սաստիկ վտանգաւոր էր և օրական 2-3 մահ սովորական էր, բարեբախտաբար վերջերս մեղմացել է։

Ինչպէս գաւառումս, նոյնպէս գիւղումս եղանակները շատ լաւ

են գնում. օդը տաք է, ձիւնը շատ քիչ անգամ է գալիս։

Համաշխարհային պատերազմը իւր անթիւ աղէտների հետ տուած է մի պզտիկ, սակայն կարևոր օգուտ. այդ այն է, որ գիւղացութիւնը այժմ իր երեխաներին ուղարկում է դպրոց, որ այս տարի ունի 125 աշակերտ, մինչ ուրիշ տարիներ 60—70 անցած չէր։ Դպրոցս ունի 4 բաժանմունք, 3 ուսուցիչ. դպրոցական յատուկ շէնքը աւարտուած չըլինելով, աշակերտութիւնը սովորում է գիւղական օդաներում։ Դպրոցական զբաղմունքները շատ կանոնաւոր են գնում. գիւղացութիւնը մեծ հետաքրքրութիւն և գուրգուրանք է ցոյց տալիս դէպի դպրոցը։

Յունուարի 29-ին տեղս եկան Ախալքալաքի Կ. Հ. Բարեգործական Ընկ. ճիւղի նախագահ պ. Շահպարոնեանը և Ախալքալաքի Հ. ծխ. եկեղ. դպրոցների տեսուչ՝ պ. Ի. Տ. Ղազարեանը։ Պ. Ղազարեանը 3 ժամի չափ քննութիւններ, հարց ու փորձեր արաւ աշակերտութեան և մեկնեց շատ գոհ։ Պ. Շահպարոնեանը ժողով գումարեց կիսաւարտ դպրոցի շէնքը աւարտելու համար. խոստացաւ Ախալքալաքի ճիւղից 300 ռուբլի նուիրել շինութեան գործին։

***

Այսօր գիւղիս եկեղեցում, Էրզրումի և Մուշի գրաւման առթիւ կատարուեց գոհացողական մաղթանք և պատերազմի դաշտում ընկած զինուորների համար հոգեհանգիստ. դպրոցի աշակերտութիւնը և ուսուցչութիւնը ներկայ էր, նաև գիւղացոց մեծ բազմութիւն։ Խօսեց դպրոցի աւ. ուսուցիչ Ա. Մալխասեան, որից յետոյ աշակերտութիւնը եկեղեցու դրան առաջ երգեց մի քանի ազգային երգեր։

Տիգրան

***

ԱՂԲԱՇ.—Աղբաշից «Կաշբալ»-ն հաղորդում է. Կ. Հ. Բ. Ը.-թեան ճիւղի անդամներ՝ պ. պ. Գեղամ Սարգարեանը և պ. Իսրայէլ Ունգեանը գիւղումս հանգանակութիւն անելով, Ս. Վարդանանց տօնին ճաշ տրուեց տեղիս ծխական դպրոցի շէնքում թէ տեղական ժողովրդին և թէ փախստականներին։ Նախ քան հացկերոյթը Ս. եկեղեցում կատարուեց հոգեհանգիստ պատերազմի դաշտում հերոսաբար ընկածների յիշատակին, որից յետոյ տեղիս քահանայ տէր Արտաշէսը քարոզեց Ս. Վարդանի գործունէութիւնը։

## ՆՈՒԷՐՆԵՐ

### «Համբաւաբերի» տարածման համար

Մի ոմն, որը չի ցանկանում անունը յայտնել, ուղարկել է խմբագրութեանս 6 ռ., որ երկու օրինակ «Համբաւաբեր» ուղարկուին գիւղական չքաւոր դպրոցներին։

Խմբագրութեանս նուիրուած «Համբաւաբերի» օրինակները ուղարկւում են ևս հետևեալ գիւղական դպրոցներին.

1. Ս. Յարութիւնեանի հաշուով՝ Ցամաքաբերդ, Քարուանսարա և Ջրաղացներ։

2. Յ. Տէր Գրիգորեանի հաշուով՝ Յովհաննայ վանք, Ղարաքիլիսա։

3. Եարալեանի հաշուով՝ Ղզքիլիսէ, Իմրխան, Դահարլու։

4. Գ. Տ. Ե. Միրզոյեանի հաշուով՝ Հոռոմ, Ջիթհանք, Սեօգիւթլի, Տամզլու, Սաչլու, Ղուլալի, Զոլախաղ և Եայջի։

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

Հայկ. կենտր. Կոմիտէն իր հերթական նիստում, հինգշաբթի, 25 փետրուարի, նախ զեկուցեց հետևեալ հեռագիրները Կոմիտէի անունով ստացուած.

I. Տաճկահայաստանի Ղարաքիլիսայից լիազօր Օթարեանը հեռագրում է. «Մուշի և Խնուսի կողմերից փոքրիկ խմբերով գալիս են հայ փախստականներ» 600 հոգի տեղաւորուել են Ալաշկերտի գիւղերում. 90% կանայք և երեխաներ են. շատերի ոտ և ձեռները ցրտատար են եղել, անհրաժեշտ է շուտափոյթ բժշկական օգնութիւն. հարկաւոր է որբանոց բաց անել տեղում։ Վաղը ես երկու օգնականներով ուղևորւում եմ Խնուս և Մուշ, ուր, ինչպէս լսում է, մօտ 1,000 հայ կան ազատուած կոտորածից»։

II. Մուշից խմբապետ Բենոն հեռագրում է. «Կոտորածից ազատուած հայերի թիւը Մուշում հասնում է 1,000 հոգու, Խնուս նոյնքան. Սասունից եկել են Մուշ 160 փախստական. ուղարկեցէք լիազօրներ օգնութեան գործը կազմակերպելու»։

III. Էրզրումից ստացուած հեռագրի մէջ ասուած է. «Կոտորածից ազատուած հայերի թիւը Մուշ և Խնուս մօտ 1000 է, Կիւմ-Կիւմ կան 100 հոգի, Էրզրումի մէջ մի քանի տասնեակ, իսկ Բիթլիս հայեր չեն նըկատւում»։ Հեռագրերի ընթերցումից յետոյ Կոմիտէի անդամ պ. Յ. Խունունց, որը նոր է վերադարձել Էրզրումից, ուր գնացել էր Քաղաքների Միութեան կողմից, համառօտ տեղեկութիւն հաղորդեց Էրզրումում կենդանի մնացած սակաւաթիւ հայերի մասին և աւելացրեց, որ կանանց ու երեխաներին պէտք է հեռացնել, որովհետև նրանց հովանաւորող և պահող ամերիկացի միսիոնների միջոցները սպառուել են և կենսական մթերքների մեծ պակասութիւն է տեղում։ Կենտ. Կոմիտէն որոշեց.

ա) Որբերին ամէն տեղից բերել Կովկաս.

բ) Էրզրումում կենդանի մնացած հայ կանանց և երեխաներին փոխադրել Կարսի շրջանը.

գ) Ուղարկել նոր լիազօրներ թէ փախստականների փոխադրութեան և թէ տեղումն օգնութիւն կազմակերպելու համար, և

դ) Ուղարկել լիազօրների հետ և մի բժշկական խումբ դեղորայքով։

II Ապա պ. Ա. Շարաֆեանը կարդաց զեկուցումն իրեն ղեկավարութեամբ կատարուած միօրեայ փախստականների անուանացուցակագրութեան մասին։ Զեկուցումից երևաց, որ ցուցակագրութիւնը ամէն տեղ կատարուել է յաջող. թերթիկները ստացուել են և այժմ մի խումբ մարդիկ հաշիւներ են կազմում, որը յետոյ հրատարակուելու է։ Ցուցակագրութեան ծախսերը ծածկելու համար կոմիտէն որոշեց տալ ևս 1000 ռ.

III. Ի նկատի առնելով որ Թիֆլիսում դեռ շատ փախստական որբ երեխաներ կան, որոնք թափառում են փողոցներում, որովհետև այժմեան որբանոցներում տեղ չկայ, որոշուեց Կրծանիս, Տէր-Յակոբեանի տանը բանալ նոր որբանոց։

IV. Վերջը զեկուցուեց Դիադինի շրջանային կառավարիչ Բարոն Հովէնի առաջարկութիւնը։ Վերջինս յայտնելով, որ իր շրջանում կան մօտ 20,000 հայեր՝ ծանր դրութեան մէջ, առաջարկում է օգնութեան հասնել այդ ժողովրդին, կազմակերպելով կանանց համար արհեստանոցներ, իսկ այր մարդկանց հնարաւորութիւն տալ վարելու և ցանելու շրջանի ազատ հողերը, որպէսզի գէթ առաջիկայ ամառը ունենան իրենց հացը։

Կոմիտէն համակրանքով վերաբերուեց այս առաջարկին և որոշեց Հայ Գիւղատնտեսական Ընկ. հետ խորհրդակցելով միասին օգնութեան հասնել Դիադինի հայ ժողովրդին։

V. Թիֆլիսում Իշխանուհի Մ. Թումանեանի ձեռներէցութեամբ փախստականների համար բացուած արհեստանոցների համար տալ ևս 1000 ռ.։

***

Կարապետ եպիսկոպոսի յիշատակը յաւերժացնող Թիֆլիսի յանձնաժողովի նախագահ պ. Մ. Բերբերեանը հաղորդում է.—Նոր-Նախիջևանի յաջորդ՝ Բարձրապատիւ Գէորգ վարդ. Չէօրէքչեանը գրում է, որ այնտեղի եկեղեցական խորհուրդը որոշել է հանգուցեալ սրբազանի անուան մի սան պահել արտասահմանում աստուածաբանութիւն ուսանելու։ Հանգուցեալ սրբազանի Նոր-Նախիջևանի յարգողները կազմել են մի նոյնպիսի յանձնաժողով՝ ինչպիսին Թիֆլիսումն է, որը նոյնպէս որոշել է հանգուցեալի անուան 3 գիրք հրատարակել՝ 1) կենսագրութիւնը, 2) նրա անտիպ գրուածներից մէկը և 3) նրա յօդուածներից կազմել մի ժողովածու։

***

ՆՈՒԷՐՆԵՐ

Կ. Հ. Բ. Ընկ. ստացել է փախստականների համար հետեւեալ նուէրները. 1. Թիֆլիսի Փոխադարձ Վարկի ընկերութեան ծառայողներից 15 ռ. 62 կ., 2) պ. Աղէքսանդր Գրիգորեանից 3 ռ., 3. Թիֆլիսի առաջին մասնաւոր լոմբարդի ծառայողներից 8 ռ. 69 կ., 4. «Հորիզոնի» խմբագրութիւնից 3000 ռ. փախստականների համար ժողոված նուէրներից։

***

ՃԻՒՂԵՐ

Արդահան.—Կ. Հ. Բ. Ընկ. Արդահանի ճիւղի վարչութեան անդամներ ընտրուեցան. նախագահ՝ Արշակ Աստվածեան, քարտուղար՝ Գէորգ Մխիթարեան և անդամներ՝ Հրանտ Մինասեան, Օ. Սամուէլեան, Նշան քահ. Օվէսեան, Գրիգոր Արեգակեան և Գէորգ Մխիթարեան։

***

Ներքին Կարմիր Աղբիւր (Շամշադինու վիճակ) գիւղի դպրոցի հոգաբարձութիւնը գրում է. Վարչութեան խնամքին յանձնուած ուսումնարանը, որին նպաստում է Կ. Հ. Բ. Ը-նը, միշտ իր բարձրութեան վրայ է եղել կանգնած, սակայն չունի գրադարան։ Անհրաժեշտ համարելով ընթերցանութեան օգնութեամբ ներշնչել աշակերտներին սէր առ ուսումն ու գիտութիւնը և յուսալով, որ Կ. Հ. Բ. Ընկերութիւնը օգնութեան է հասնում այդպիսի դէպքերում, խնդրում է նպաստել դպրոցին աշակերտական գրադարան կազմելու։

***

Դղլար.—Կ. Հ. Բ. Ը-թեան տեղական ճիւղի վարչութեան անդամներ ընտրուել են.—Նախագահ՝ Տիգրան Բաղդասարեան, քարտուղար՝ Արամ Գիւրջեան և գանձապահ՝ օր. Աննա Ազլինցեան։ Անդամներ՝ տիկին Աղնիւ Գորգեան և բժ. Խաչատուր Գորգեան։

## Քրոնիկոն

Ըստ մեր ստացած վերջին ստոյգ տեղեկութեանց Խնուսի և Մուշի շրջաններում նորից երեւացել են մօտ 8000 հայ՝ մեծ մասամբ կանայք և երեխաներ, որոնք մերկ և քաղցած, իսկ շատերը հիւանդ են, բոլորն էլ շուտափոյթ օգնութեան կարօտ։

***

Հայկական Կենտրոնական Կոմիտէն փախստականների միօրեայ անուանացուցագրութիւնը կատարեց փետրուարի 14-ին Թիֆլիսի, Գանձակի, Երեւանի և Կարսի շրջաններում, Պարսկաստան և Տաճկաստանի նոր նուաճած երկիրների մի մասում։ Ամեն գիւղից ստացւում են թերթիկները. մօտ օրերս կը կատարուեն թուական ամփոփումներ։

***

Քաղաքների միութիւնը ուղարկեց Վան մի ախտահանական խումբ 8 հոգուց բաղկացած. մի ուրիշ խումբ էլ ֆելդշերական-սննդատու կազմակերպւում է Մուշ ուղարկելու համար։

***

Թոքախտի դէմ մաքառող Կովկասեան ընկերութիւնը որոշել է ապրիլի 20-ին կազմել իր սովորական «Սպիտակ ծաղկի» օրը։ Այս ամսու սպասւում է ընկերութեան Աբաստումանի սանատորիայի բացումը։

***

Թիֆլիսի հայ դերասանական խումբը մեկնեց Բագու ներկայացումներ տալու. այն տեղից խումբը անցնելու է Կովկասի միւս հայաբնակ քաղաքները։

***

Թիֆլիսի քաղաքային վարչութիւնը կազմել է այս 1916 թ. Բելգիական ընկերութիւնից քաղաքին անցած էլեքտրաքարշի նախահաշիւը։ Մուտք սպասւում է 2,560 հազար ռ., իսկ ծախք 1,634,000. ռ., ուրեմն տարեկան արդիւնքը կարող է հասնել մօտ միլիոնի, որ եթէ քաղաքը գործադրի կրթական և առողջապահական կարիքների վրայ, ազգաբնակութեան առաջդիմութեանը մեծ զարկ կը տայ։

***

Փախստականների աշակերտ-երեխաների համար ճաշարանին, որ բացուած է Գայիանեան օրիորդաց դպրոցի շինութեան մէջ, Հ. Կ. Կոմիտէն տալիս է նպաստ ամսական 500 ռ.։

***

Հայկ. Կենտ. Կոմիտէն բացեց Թիֆլիսում (Վարանցովսկայա փողոց, Տ. Ղուլիջանեանի) նոր ապաստարան 60 հոգի փախստական երեխաների համար, որ յանձնուած է Հայ Կանանց Կոմիտէին։

***

Թիֆլիսում մօտ ապագայում բացուելու է նոր բանկ «Կովկասեան փոխադարձ վարկի ընկերութիւն»։

Նախաձեռնողներն մի խումբ իրաւաբաններ, բժիշկներ, մանկավարժներ, ինժեներներ և այլ պաշտօնեաներ։ Բանկի գլխաւոր նպատակն է ծառայել ինտելիգենտ դասակարգի աշխատաւորներին։

***

Մի քանի օր առաջ Թիֆլիս եկաւ Կ. Պոլսից փախած Պարիզի կոնսերվատորիայի աշակերտ պ. Լևոն Յարութիւնեանը, որ հռչակաւոր ուսուցչապետ Պոլ Մունէի ամենասիրուած աշակերտն է և ամբողջ Եւրոպայում միակ հայ դերասան ուսանողը (tragèdien)։ Պարոնը մէկից աւելի անգամներ լուրջ դերերում բեմ է դուրս եկել Պարիզի ամենամեծ թատրոնում՝ Comèd e française-ում, և նրա տաղանդը գնահատուած է Ֆրանսայի գեղարուեստական հասարակութիւնից։ Նա պատերազմը վերջանալուն պէս Պարիզ կը վերադառնայ, իսկ այժմ մտնելով «Աբէլեան» խմբի մէջ երկու օր առաջ Բագու մեկնեց, ներկայացումներին մասնակցելու։

## Արտաքին տեսութիւն

### ԴՐՈՒԹԻՒՆԸ ՏԱՃԿԱՍՏԱՆՈՒՄ

Կովկասեան ճակատի վրայ Տաճկաստանի կրած պարտութիւնը սկսում է անդրադառնալ պետութեան ներքին կեանքի, ներքին քաղաքականութեան վրայ։ Աթէնքից և Բուքարեստից ստացուած վերջին հեռագրերը լուրջ հիմքեր են տալիս ենթադրելու, որ Տաճկաստանի ներքին քայքայումն արդէն սկսուած է և որ շատ հեռու չէ այն օրը, երբ այս անարգ պետութիւնը պէտք է կործանուի իր կրծքին ծանրացած ոճիրների տակ, կամ, առաւելն, կծկուի նախկին Իկոնիայի սուլթանութեան սահմանների

*Եւ այդ տեսակէտը հաստատելու համար նա վերլուծում է Գերմանիոյ վերջին քսանհինգ տարուայ քաղաքականութիւնը Թիւրք կայսրութեան վերաբերմամբ և բերում է վկայութիւններ գերման իմպերիալիստներից։*

*Հեղինակի կարծիքով պաշտօնական Գերմանիան երբէք սիրով չէ վերաբերուել հայ ժողովուրդին ու հայոց հարցին, որի ապացոյցն է 1896 թ. հսկայ ջարդերէն վերջ Վիլհելմի Պոլիս այցը, որ նա իրեն բարեկամ անուանեց կարմիր Սուլթանին և Դամասկոսի մէջ ինքզինքը յայտարարեց համայն իսլամներու պաշտպանը, այն իսլամներուն, որոնց ձեռքով մի տարի առաջ 300,000 քրիստոնեայ և անմեղ հայեր կոտորուած էին։*

*Գերմանիոյ անբարեացակամութիւնը հաստատելու համար բերում է երկրորդ ապացոյց—1913 թուի հայկական բարենորոգումների ծրագրի մէջ խաղացած դերը, ուր իր ամբողջ ուժը ի գործ դրաւ այն դարձնել մի քառակուսի անիւ, որը և յաջողեց։*

*Հեղինակը այդ ապացոյցները հրապարակ բերելէն վերջ, աշխատում է երևան բերել, թէ ինչից է յառաջ գալիս գերմանական անբարեացակամութիւնը հայոց հարցի և հայերու հանդէպ։*

*Եւ տալիս է մօտաւորապէս այս բացատրութիւնը.*

*Գերմանիան յոյս չունենալով ձեռք բերել շուկաներ և գաղթավայրեր Եւրոպայում, աչքը ձգել էր Պալքաններու և մանաւորապէս Թրքական հսկայ կայսրութեան վրայ, որով և պիտի կարողանար իրականացնել գերման իմպերիալիստներու հսկայ երազը—Համբուրգ—Բաղդադ երկաթուղու գիծը, որը և պիտի լինէր համաշխարհային շուկայի գլխաւոր երակը։*

*Բայց իրականացնելու համար այդ ծրագիրը՝ իրեն պէտք էր մի Թրքական կայսրութիւն, որը բնակեցուած լինէր այնպիսի ժողովուրդներով, որոնք անընդունակ լինէին քաղաքական և տնտեսական նախաձեռնութիւններու։*

*Թիւրք կառավարութիւնը և մահմեդական ժողովուրդները իր ուզած տարրերն էին, բայց կար հայ ժողովուրդը՝ դրացի ռուս պետութեան, բնակութիւն հաստատած այն բարձրավանդակներուն և լեռնաշղթաներուն վրայ, որտեղից պիտի անցնէր Բաղդադի երկաթուղագիծը, և որուն կարող էր վտանգ սպառնալ իր տնտեսական նախաձեռնութիւններով և քաղաքական ձգտումներով։*

*Պաշտօնական Գերմանիան չի սիրում հայ ժողովուրդը Հայաստանի Բարձրավանդակում, որը լինելով անկախութեան մի օճախ, իր ընդունակութիւններով կարող է ապագային Ռուս պետութեան գործիք դառնալով՝ վտանգ սպառնալ գերմանական շահերուն։ Բայց նա սիրում է հայ ժողովուրդին որպէս միակ տարրը Թիւրք կայսրութեան մէջ, որը կարող է իր ընդունակութեամբ և աշխատասիրութեամբ յառաջ տանել գերմանական գաղթարնակութեան (կոլոնիզացիայի) քաղաքականութիւնը մօտաւոր Արևելքում։*

*Ինչպէս հաշտեցունել այս երկու հակամարտ շահերը։ Գերմանական ճկուն միտքը այդ միջոցն էլ գտել է։ Եւ ներկայ յօդուածի հեղինակը բերում է գերմանացի հանրածանօթ հրապարակախօս դոքթէօռ Պաուլ Ռօորբախի կարծիքը, որ յայտնել է «Բաղդադի երկաթուղին» գրուածքի մէջ, ուր առաջարկում է «հայերը վար իջեցնել իրանց լեռներից, և նրանցով գաղթավայրեր ստեղծել Բաղդադի երկաթուղու ամբողջ երկայնքին։ Այսպիսով գերմանական գիծը կանցնի ամենահարուստ և ամենաճարտարարուեստական երկիրը. անապատները կը լեցուին հունձքերով և գիւղերով, և այսպիսով «Բաղդադի» երկաթուղագծի բաժնետէրերը ինքզինքնին լաւ կզգան։»*

*Հեղինակի կարծիքով այս միտքը արագօրէն յառաջդիմեց գերմանական տիրող տարրերու մէջ. և ահա այս պատերազմի առթիւ Գերմանիոյ կողմէ Թիւրքիոյ տրուաւ այդ ծրագիրը գործադրելու համար, և Թիւրքերը գործադրեցին իրանց ըմբռնած ձևով։*

*Ձեր Գերմանիան տուաւ, իսկ աշխատանքը Թիւրքիան կատարեց՝ ամեն մէկը իրա ըմբռնած ձևով։*

*Եւ ահաւասիկ այն ընդհանուր տեսակէտը, որ հեղինակը տալիս է իր յօդուածի մէջ, հաստատելու համար պաշտօնական Գերմանիայի պատասխանատուութիւնը հայկական «տեղահանութեան» ու ջարդերու ծրագրի մէջ։*

*Յօդուածի երրորդ մասը յատկացուած է հայոց տեղահանութիւններու և ջարդերու մանրամասն տեղեկագրերուն, տրուած պաշտօնական ու անկողմնակալ մարմիններու և անձերու կողմից, որտեղ և հաստատում է Գերմանիայի և իր պաշտօնական ներկայացուցիչներու մեղսակցութիւնն ու պատասխանատուութիւնը Թրքական սիրագործութիւններով։*

*Այդ մասին յաջորդ անգամ։*

*Տրդատ*

---

## ԿԱՐՆՈՅ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՈՂԲԵՐԳՈՒԹԻՒՆԸ

*Հայկական անլուր մարտիրոսագրութեան էջերից մէկն ևս բացուած է մեր առաջ։ Կարնի առումից մի քանի շաբաթ յետոյ, վերջապէս, մեզ համար պարզւում են մանրամասնութիւնները այն քստմնելի կոտորածի, որին ենթարկուել է Կարնի շրջանի հայ ժողովուրդը։*

*Երէկ Թիֆլիս վերադարձաւ Քաղաքների Միութեան կողմից որոշ միսիայով Կարին գնացած պ. Յ. Խունունցը, որ ականատես վկաների ցուցմունքների հիման վրայ կարողացել է բաւական հանգամանօրէն վերականգնել այդ կոտորածների պատմութիւնը։ Այդ վկաներն են ամերիկական հիւպատոս միստր Ստեպելտոնը, նրա կինը՝ լէդի Մէյրին, կարնեցի վաճառական Երուանդ Եաղուբեանը, դերձակ Մկրտիչ Բալթաճեանը և գերութիւնից ու կոտորածներից հրաշքով ազատուած մի քանի կանայք և երեխաներ։*

*Պ. Յ. Խ.-ի պատմութիւնից երևում է, որ մինչև անցեալ ձմեռուայ Սարիղամիշի պարտութիւնը Թուրքերի վերաբերմունքը դէպի հայերը եղել են, առերոյթ գոնէ, բարեկամական։ Հայ զինուորները մինչև այդ ժամանակ ծառայում էին զօրքի մէջ. Թիկունքում հայերն աշխատում էին հիւանդանոցներում և սանիտարական հաստատութիւնների մէջ, խաղաղ ժողովրդի հանդէպ արտակարգ ճնշումներ գործ չէին դրւում և ընդհանրապէս կառավարութիւնը ոչինչով չէր ցոյց տալիս, թէ խռովութիւն է գնում Թիւրքերի և հայերի միջև։ Սակայն Սարիղամիշի պարտութիւնից յետոյ այս վերաբերմունքը կտրականապէս փոխուած է։ Ջարդուած զօրքի հրամանատարները Թիւրք ժողովրդի գայրոյթին խոտոր ուղղութիւն տալու համար սկսում են լուրեր տարածել, թէ իրենց անյաջողութեանց պատճառները հայերն են, թէ նրանք են ռուսներին առաջնորդում, թէ Տաճկաստանը ոչ թէ ռուսների դէմ է պատերազմում, այլ հայերի դէմ, թէ Կովկասում հայերը մահմեդականներին կոտորում են, և այլն և այլն։*

*Այս լուրերին զուգընթաց հրաման է գալիս Պոլսից հայ զինուորներին զինաթափ անելու և ռուսաց սահմանից հեռու, թիկունքում իբրև գրաստներ աշխատացնելու, իսկ հայ ժողովրդի դէմ ջարդեր կազմակերպելու։*

*Առաջին ծրագիրը յաջողւում է հեշտութեամբ, իսկ վերջինը լուրջ դժուարութիւնների է հանդիպում։ Թիւրք ժողովուրդը մասամբ դէպի հայերն ունեցած բարեկամական զգացմունքից դրդուած և մասամբ էլ երկիւղ կրելով այն բանից, որ եթէ ինքը հայերին ջարդի, ռուսները, Կարինը գրաւելու դէպքում, անպատիժ չեն թողնի իր ոճիրը, ընդառաջ չեն գնում ջարդերի ծրագրին։*

*Այն ժամանակ կառավարութիւնը մի ուրիշ միջոց է յղանում։ Նա աշխատում է զանազան պրովակասիոն քայլերով ստիպել հայերին ապստամբուելու, որպէս զի դրանով մի կողմից՝*

ինքը օրինական հիմք ունենայ նրանց կոտորելու, իսկ միւս կողմից՝ գրգռի նրանց դէմ Թուրք ժողովրդին։

Այս նպատակով նա նախ պահանջում է, որ քաղաքի անուանի հայերը գնան և իրենց ձեռքով քանդեն այն արձանը, որ ռուսները 1829 թուին կանգնեցրել էին Հայոց գերեզմանատանը՝ պատերազմում ընկած ռուս զինուորների յիշատակին։

Կառավարութեան նպատակը պարզ էր. կամ հայերը կկործանեն արձանը և դրանով կը վարկաբեկեն իրենց ռուսների առաջ և կամ չեն կործանի և այդպիսով Թուրք ամբոխի ֆանատիզմը կը գրգռեն իրենց դէմ։

Հայերը բնականաբար մերժում են կատարել այս ամարգի հրամանը։ Այն ժամանակ Թուրք ժանդարմները նրան բռնի տանում են գերեզմանատուն եւ զօրքի գլխաւոր ինտենդանտի ներկայութեամբ ստիպում կատարել իրենց կամքը։ Զուր են անցնում Կարնոյ առաջնորդ Սմբատ եպիսկոպոսի և հէնց իրենց քաղաքացիների բոլոր միջնորդութիւններն ու խնդիրները։ Թուրք կառավարութիւնը իր գիւային ծրագիրների մէջ միշտ անյողդողդ է...

Սակայն այս դէպքը ցանկալի արդիւնք չէ տալիս։ հայ ժողովրդի արիւնը պղտորւում է, բայց նա՝ իրազեկ իր վիճակի ծանրութեանը, հրապարակական ցոյցերով չէ արտայայտում իր վրդովմունքը։

Դրանից յետոյ տաճիկ կառավարութիւնը երկրորդ փորձութեան քարն է գլորում մէջտեղ։ Նա պահանջում է, որ հայերը թողնեն իրենց բնակարանները այն առարկութեամբ, թէ նրանց մէջ հիւանդ ու վիրաւոր զինուորներ պէտք է տեղաւորուեն։ Հայերը իրարանցով են ընկնում. ձիւն ձմեռն իրենց բնակարանները ձգեն ո՞ւր գնան։ Նրանք դիմում են կառավարութեանը. ինչքան մարդու տեղ էք ուզում մեզնից, մենք պատրաստ ենք նրանց համար տեղ հայթայթել, և ոչ միայն տեղ, այլ և նրանց ծախքերը պատրաստ ենք հոգալ, միայն թէ մեզ մեր բնակարաններից մի հանէք, ասում են նրանք։ Այս վերջին առաջարկը, ըստ երևոյթին, շատ դուր է գալիս կառավարութեանը, և նա պահ մի յետաձգում է իր մտադրութիւնը։ Այսպիսով հայերը բացի իրենց վրայ բարձուած բազմաթիւ զինուորական տուրքերի ու պարտաւորութիւններից, մի առանձին հիւանդանոց պահելու և նրա վրայ ամսական մի քանի հարիւր ոսկի ծախսի պարտականութեան տակ ես մտնում են։

Վերջապէս կառավարութիւնը մի վերջին փորձ ևս անում է։ Նա բացայայտ քաղաքական ահաբեկութիւն (տեռոր) է կազմակերպում հայերի դէմ։ —Զանազան պատրուակներով նա բանտերն է լցնում հարիւրի չափ մեծ մասամբ ունեւոր կամ ինտելիգենտ հայեր և նրանցից մի քանիսին, դրանց թւում և Սեդրակ Բաստըրմաճեանին, մահուան պատժի ենթարկում։

Սակայն հայերն այս տարաձայնութիւնն էլ տանում են խոհեմութեամբ և կառավարութիւնը այդ սպանութիւններով ևս իր նպատակին չի հասնում։

Երբ երիտասարդ թիւրքերի կենտրոնական կոմիտէն տեսնում է, որ հայ ժողովուրդը հեշտութեամբ չի ենթարկւում պրովակացիայի, իսկ թիւրք ժողովուրդն էլ հակամիտութիւն չի ցոյց տալիս հայերին կոտորելու՝ սկսում է լուրջ նախապատրաստական միջոցներ ձեռք առնել։ Պոլսից գալիս են յատուկ քարոզիչներ թիւրքերի տրամադրութիւնը յեղաշրջելու համար։ Սրանց միանում են կարնեցիներից երկու մոլեռանդ, թիւրք ամբոխի վրայ մեծ ազդեցութիւն ունեցող թիւրքեր—Էրիր խոջա և Ջէֆէր բէկ, ինչպէս նաև երիտասարդ թիւրքերի կենտրոնական կոմիտէի անդամ Հիլմի բէյը։ Սկսւում է մի ուժեղ պրոպագանդ հայերի դէմ մզկիթներում, սրճարաններում, շուկայում և ամեն մի մութ անկիւնում։ Այն, ինչ որ հնարաւոր չէր բացայայտ պրովակացիայի ճանապարհով, մի քանի շաբթում հնարաւոր դարձաւ այս քարոզչական մութ գործունէութեամբ.—Թիւրք ժողովրդի տրամադրութեան մէջ, արդէն մարտի վերջերին, զգալի էր հակահայկական ուղղութեամբ մի բեկումն։

Այս նոր տրամադրութիւնն իր բուռն արտայայտութիւնը գըտաւ անցեալ տարուայ ապրիլի 5-ին։ Այդ օրը, Թերևս Վանի դէպքերի ազդեցութեամբ, գումարւում է քաղաքից դուրս մի մեծ միթինգ։ Թիւրք հռետորները խօսում են այստեղ հայ ժողովրդի «դաւաճանական» ընթացքի մասին և այն միտքն արծարծում, որ Օսմանեան պետութեան փրկութեան համար անհրաժեշտ է ոչընչացնել հայ տարրին այդ երկրից։ Այդ ճառերի ազդեցութեան տակ արդէն մինչև այդ հակահայկական թոյնով վարակուած ժողովականները որոշում են առաջին իսկ յարմար առթիւ ջարդել Կարնոյ և շրջակայքի հայերին։ Սակայն որովհետև դեռ թիւրքեր կային, որոնք դէմ էին այս ոճրագործութեան՝ միթինգն ընդունում է մի լրացուցիչ վճիռ ևս .—եթէ որևէ մահմեդական կհամարձակուի պահել իր տանը կամ հովանաւորել թէկուզ մի հայի՝ նա պէտք է մահուան պատժի ենթարկուի։

Այս որոշումներից յետոյ Կարնոյ հայ ժողովրդի դառնութեան բաժակը լցուած էր։ Եւ նա, այդ անբաղդ ժողովուրդը ըմպեց այդ բաժակը մինչև վերջին կաթիլը...

Ա. Զամալեան

23 փետր. (Վերջը յաջորդ անգամ)

## 500,000 ՀԱՅ ՄԻՋԱԳԵՏՔՈՒՄ

Դոկտոր Լիպսիուսը Գերմանիայից Ցիւրիխ է գնացել Զուիցերիայի կոմիտէների հետ համաձայնութեան գալու ու միջոցներ ձեռք առնելու, որ կարելի լինի օգնութիւն հասցնել կէս միլիոն հայերին, որոնք փոխադրուած են Միջագետք և որոնք ծայրայեղ կարօտութեան մէջ են գտնւում։

## ԲՆԱՋՆՋՈՒՄԸ

(ՊԱՏԿԵՐ)

Ս...ին

Լուսնկայ գիշեր էր...

Գիշեր մը այն լուսնկայ գիշերներէն, որոնք կորսնցուցած էին այլևս իրենց բանաստեղծական ուրախ ու հովուական հմայքը։

Լուսնկայ գիշեր մը, որ ունէր միայն արեան հմայքը, կոտորածի, բնաջնջումի բուքոտ բանաստեղծութիւնը։

Ճիշտ այսպիսի գիշեր մը, կոտորածի և աւերածութեան մըրրիկը բարձրացնող մոնկոլական մոլեռանդ խումբ մը թուով 50 հոգի, չէրքէզ մահմեդական պետի մը առաջնորդութեամբ, արաբական կատղած նժոյգները հեծած, աճապարում էին դեռ լոյսը չը բացուած հասնել Տ... գիւղը և գիշերով պաշարել։

Լուսոյ աստղը դեռ նոր երևցած, արևելքի մեղմ քամին արդէն սկսած էր։ Ամբողջ գիւղը առաւօտեան զով հովի քնաբեր շոյումին ենթակայ անուշ նինջ էր լինում, վստահ Տիրամօր պահապան հրեշտակին, որ հսկում էր իրենց գիւղավերը։

Լուռ և խաղաղ էր գիւղը...։

Լսւում էր միմիայն պահակի փայտի հատ հատ հարուածները և շուների հաւատարիմ հաջիւնը։ Իսկ Զադարը սովորականէն աւելի անհանգիստ էր այդ գիշերը. նա չէր լռում, նա ինքզինքը կորտում էր, հեռանում էր գիւղէն դուրս, մտնում էր մօտիկ արտը, փոքրիկ ձորակը ու վերադառնում աղմկող կատաղութեամբ,

Շրջակայ մի քանի գիւղի մասնակի կոտորածի լուրը, երկու օր արդէն, շրջան բրած էր բոլոր հայ գիւղերը։ Քաղաքը արդէն տուած էր իր վճիռը։

Վասպուրականը բռնկած էր...։

Հայը արդէն ամեն տեղ բնաջնջման ենթակայ կոտորւում էր ու հալածւում, հայ քաջերը ամրանում էին լեռները, մղելու անհաւասար կռիւը...։

Խումբը երկուքի բաժնուած մօտենում էր գիւղին, մէկէն յարձակելու և մինչև կէսօրին ամէն բան վերջացնելու հաստատ որոշումով։ Չէրքէզ չաւուշը իր սև արաբական նժոյգը նստած, արագացնում էր քայլերը. ձիերը թռչում էին, փրփուրը բերաններին, արիւնքրտինք մտած։ Հեռուէն լսւում էր արդէն հատ հատ ձիերու ոտքի ձայները։

Գիւղի երիտասարդութիւնը սպասում էր թշնամիին, բայց ոչ այդպէս շուտ և յանկարծակի։ Դեռ կային գիւղեր, դեռ կարգը իրենց չէր հասած։

Չէրքէզ չաւուշը այս բոլորը շատ լաւ գիտէր և նա գիշերէն օգտուած արդէն գիւղը շրջապատած էր։ Երբ հովիւը դեռ նոր դուրս ելաւ գիւղէն հօտը դաշտ տանելու, գարնան ծաղկաւէտ դաշտը։

Բոլոր գիւղական խրճիթները դեռ նոր լեցուած էին երեխաների առաւօտեան ճիչերով... կաթ էին ուզում։

Ժամհարը ժամում տախտակն էր ծեծում Առաւօտ լուսոն երգելով, միացնում էր ձայնը գիւղի առաւօտեան անուշ իրարանցումին։

Մամիկը դեռ նոր դուռը ճռացնելով, խաչակնքում էր իւր երեսը, աճապարելու ժամ իր մոմը վառելու Տիրամօր ամենազօր պատկերին առաջ։

Ծերուկ տէրտէրը դեռ նոր սկսած էր «Հայր մերը» սեղանի խորէն։

Գիւղի ջահել աղջիկները դեռ նոր սափորը ուսին, ջրի էին վազում... իրենց սիրած երիտասարդի տան պատի տակէն կամաց մը սողալով...

Թոնիրները դեռ նոր էին ծխում...

Արևը դեռ չէր ծագած... բայց լոյսի ճառագայթները վերէն ողողում էին գիւղը իրենց կիսալոյս ու անհետացող ստուերով։

Հեռուն գիւղի աղբիւրը գիլ գլգլում էր գիւղամէջը...։ Եւ այս մեղմ իրարանցման մէջ միայն Զաղարն էր, դեռ նոր այրիացած Զուլոյի շունը, որ հանգիստ չունէր ու անսովոր կերպով աղմկում էր. ճանկելով Զուլօ քոյրիկի տան դռները, նա ընելիք ունէր իր տիրուհուն. դուռը չէր բացուեր։

Զուլօն ալ վեր ելաւ, բացաւ դուռը, խաչակնքեց երեսը դէպ աղօթարան դարձած, տեսաւ իր Զաղարի անսովոր անհանգստութիւնը, հաց տուաւ—ոչ մի օգուտ, կշտամբեց—չեղաւ ու քարով խփեց, բայց շունը կուրը բարձրացած սկսաւ հաչել անվերջ, բերանը վեր վերցրած. նա բողոքում էր որ իրան չեն հասկանում։

Զուլօն գեղեցիկ էր, գիւղամիջի միակ զարդը, Տ. գիւղի պարծանքը։ Զուլօն այրի էր, ամուսինը երկու ամիս առաջ մեռած էր, ջէյրան Սաքօն էր՝ գիւղի քաջ տղամարդը... Զուլօն յղի էր... երկունքի օրերն էին...

Գեղջկուհու վերջին յոյսն էր այդ, իր Սաքոյի միակ պատկերը. նա հպարտութեամբ նայում էր այդ գանձին, որ իրեն այնքան դուր էր գալիս. նա իր փոքրիկ Սաքօն էր, նախազգացումը և գիւղի մամիկները վաղուց իրեն աւետած էին այդ գաղտնիքը։ Նա շատ էր գուրգուրում դեռ չը ծնած իր երեխային։

Դեռ չը ծնած երեխային մայրը սիրում էր և ո՞վ գիտէ այդ ինչ նախազգացում էր...,

Պաշարուած գիւղը անգիտակ իր շուրջ կուտակուող փոթորկոտ ամպերին, աճապարում էր սկսելու իր գարնանային դաշտի աշխատանքը։

Գիւղամիջից հեռանում էր չէրքէզ չաւուշի ծպտուած լըրտեսը։

Պայթում են հրացանները...

Ամէն ինչ կանգ և առնում...

Բոլորը շուարած աճապարում են եղելութիւնը հասկնալու. միակ Տէրտէրն է որ դեռ ժամում, խորանին ներս, անիծում է գիւղը, իսկ դուրսը կտուրին վրայ Զաղարն է որ փրփուրը բերաններին ոռնում է ու բողոքում։

Բայց ալ անզօր են անոնք. ոչ խորանի աղօթքը և ոչ կըտուրի ոռնոցը։

Ձայները մօտենում են, կրակը տեղում է ամէն ուղղութեամբ, չէրքէզ չաւուշը գոռում է սեաւը հեծած։

Գիւղի մէջ ոչինչ կայ կարգին, ուլ ու մանուկը, նախիրն ու հօտը, հովիւն ու նախրորդը, կինն ու մարդը, մամիկն ու տէրտէրը բոլորն իրար խառնուած փախուստ են տալիս դէպի վեր, լեռը, դէպի Տիրամօր մատուռը. տղերքը կռւում են անօգուտ. տասնեակ մը միայն յաջողում է պատռել շղթան ու բարձրանալ լեռը։

Թշնամին մօտենում է...

Լուռ է. այլևս ոչ մի ձայն, դաշոյնն ու սուրը հնձում են մարդ ու կին առանց երբէք խնայելու...

Խնայում են միմիայն գեղեցիկ աղջիկներին ու հարսներին։ Առաւօտեան նոր զարթնող գիւղը կրկին լռած է լուռ ու մեռելային խոր քնով մը։

Անվերջ դիակ, արիւնհոտ մանուկը մօր կրծքին սեղմուած, դեռ նուաղած ձայնով բերանը բաց ու խուփ է անում, հօն տէրտէրը Տիրամօր պատին տակ իր ապակեայ աչքերը չռած կապոյտ երկնքին լուռ, անձայն «Հայր մեր»ն է շարունակում, վար, քարին տակ դիակների մօտն է լսւում—բոլորը կիսամեռ տանջւում են, գեաւուրը առանց տանջանքի չը պէտք է մեռնի։ Վերը գիւղին միւս ծայրը կրակի վրայ մարդիկ են եփում, գիւղամէջը առուակին մէջ աղիքները դուրս թափած մարդ մը, գլուխը ջուրին մէջ, ոտքերը վեր տնկած, ատամները սեղմած իր ուժասպառ ձեռքերով դեռ հողն է ճանկռում։ Ժամի դրան ժամհարը իր արիւնով ներկում է Տիրամօր դուռը, իր վերջին ծառայութիւնը մատուցանում։ Իսկ ժամում մոմոտ կարպետների վրայ գիւղի աղջիկները և հարսները պար են ածում։ Ուրիշ տեղ ռէսի մեծ սենեակում գեղեցիկ աղջիկների առագաստն են երգում...

Եւ այդ բոլորը դեռ արևը նոր ծագած...

Զաղարը վաղուց լռած է, իր ճերմակ գանգուրները կարմիր ներկուած նա վաղուց պառկած է Զուլոյի շէմքին պինդ կըպած։

Դուռը գոց է...

Զուլօն երկունքի ցաւերին է փակած... մէն մենակ..., դայեակը սրախողխող է եղած, մեծ տատը ժամու ճամբին ինկած է արդէն։

Զուլօն մէն մենակ պլլուած է երկունքի ցաւերին, վախի և ցաւի գալարումների մէջ կեանք է տալիս հայ պատանիի մը։

Գիւղի դռները մէկիկ մէկիկ շառաչումով բացւում են իրար ետևէն և Աստուծոյ բարեկամ հաւատացեալները, անոր մոլեռանդ պաշտողները ներս են խուժում, թալանի և տափանքի իղձը սըրտերուն։

Մօտենում են Զուլոյի դուլումի հարէմին, խփում են դրան և գիւղական դուռը երկար ճռոցով մը դառնում է շէմքին ու խորտակւում։

Զուլօն ուշաթափւում է, ցաւի է վախի սարսուռը սրտին. վրայ են հասնում, գեղջկական պարզ շրջազգեստին մէջ ներկացած Զուլօն փռուած է յատակին, գլուխը երեսին, անշունչ և հերարձակ։ Պարզութեան մէջ Զուլոյի մոմացած դէմքի գեղը շանթահարում է Մուհամէտի զաւակները, վերցնում են Զուլօն գետնէն. սթափւում է խեղճը, աչքերը բաց անում, նայում է շուրջը ու սարսռում։

Արգանդի կսկիծը և մահուան սարսուռը շփոթեցնում են հայ գեղջուկը։

Ներս է մտնում հրէշ Չէրքէզ չաւուշը. ետ են քաշւում բոլորը, գեղեցկուհին յանձնում են չաւուշ Չէրքէզին ու հեռանում են տխուր ու սրտաբեկ։

Պաղատանքն ու արցունքները չեն ազդում հրէշի սրտին. նա բան չի հասկանում խղճի ձայնէն։ Անոր խիղճը միայն իր սրտի հանգստին գոհացում տալն է. գրկում է Զուլոյին, ինկած երկունքի տանջանքին վրայ...։

Հնչում է փողի ձայնը, աճապարելու է մօտակայ հայ գիւ-

ռ. 50 կ., Յովսէփ աւ. քահ. Առուծեանից՝ Բորժոմում Մելքոն Յակոբեանի տանը հաւաքած 61 ռ., Արգուինի Գարեգին քահ. Տէր-Յարութիւնեանից՝ իր ծխականներից ժողոված 5 ռ., Անափա քաղաքից՝ Պօղոս քահ. Տէր-Մինասեանի միջոցով 50 ռ., տիկ. Անահիտ Սիմէոնեան Բաղդասարեանից յօգուտ Ծիրանաւորի որբանոցի 500 ռ., Ախալքաղաքի կանանց Կոմիտէից 1,000 ռ., Գեներալ Ա. Ս. Ղորղանեանից 10 ռ., Աֆրիկեան առեւտրական տանից յօգուտ որբանոցների 667 ռ., Յով. քահ. Ամիրխանեանից՝ Ռուբէն Պետրոսեանի որդու մկրտութեան հանդէսին յօգուտ որբերի ժողոված 23 ռ., «Հորիզոն»ի խմբագրութիւնից՝ Թիւրքահայ մտաւորականներին նպաստ տալու 1,000 ռ., Ալ. Խատիսեանի միջոցով Յովսէփ Մանթաշեանի նուիրած դրամից՝ յօգուտ Սանահնի որբանոցի 1,200 ռ., Ալէքսանդրեան գաւառական Զեմսկի Ուպրաւայից 500 ռ., գումարը 98,467 ռ. 34 կ.:

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

### ՑՈՒՑԱԿ № 9

# „ՀԱՄԲԱՐՁԱԲԵՐ“-Ի

## ԱՆՈՒԱՆԱՑՈՒՑԱԿ ԱՊԱՍՏԱՐԱՆՆԵՐԻ ՓԱԽՍՏԱԿԱՆ ՈՐԲ ԵՐԵԽԱՆԵՐԻ

## ԴԻԼԻՋԱՆԻ ՆՈՐ ԱՊԱՍՏԱՐԱՆ

(ցուցակ Վանից վերջին անգամ եկածների)

(Շարունակութիւն)

| № № | ԱԶԳԱՆՈՒՆ ԵՒ ԱՆՈՒՆ | Ծննդավայր | Տարիքը | Ծնող կամ հայր կամ մայր | Ծնողների տեղը | Գրագէտ | ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ |
|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | Աբրահամեան Մելքոն | Թիմար | 13 | — | — | այո | |
| 2 | Աղազադեան Թաչնակ | Վան | 9 | — | — | – | |
| 3 | Աւետիսեան Յովհաննէս | Նարեկ | 8 | — | — | — | |
| 4 | Աբրահամեան Յարութիւն | Հայոց-Ձոր | 15 | ունի | Դիլիջան | այո | |
| 5 | Գաբրիէլեան Գրիգոր | Ախար | 12 | հայր | անյայտ | — | |
| 6 | Դանիէլեան Հրանոյշ | Դարունց | 5 | մայր | անյայտ | — | |
| 7 | Եղիազարեան Ասփոր | Աւանց | 12 | հայր | անյայտ | այո | |
| 8 | Իսրայէլեան Սերոբ | Թիմար | 8 | — | — | — | |
| 9 | Իբոյեան Սիմէոն | Խնուս | 14 | — | — | ոչ | |
| 10 | Լեոնեան Աւետիս | Ամանաշատ | 15 | մայր | Վան | այո | |
| 11 | Լեոնեան Խոսրով | » | 10 | — | — | այո | եղբայրներ |
| 12 | Կարապետեան Մանուէլ | Ալիւր | 7 | — | — | — | |
| 13 | Մելքոնեան Անահիտ | Սեան | 14 | — | — | ոչ | |
| 14 | Մելքոնեան Զմրուխտ | » | 10 | — | — | ոչ | քոյրեր |
| 15 | Մկրտչեան Հոփսիմէ | Դարմանգիւղ | 6 | մայր | Վան | ոչ | |
| 16 | Մելքոնեան Թագուհի | Խակե | 12 | մայր | անյայտ | ոչ | հիւանդանոցում. |
| 17 | Մկրտչեան Փանոս | Ալիւր | 10 | — | — | — | |
| 18 | Մկրտչեան Զաւէն | » | 15 | — | — | այո | |
| 19 | Պօղոսեան Միսակ | Արճակ | 11 | հայ-մ. | Երևան | — | |
| 20 | Սարգսեան Սաթենիկ | Դարունց | 10 | հայ-մ. | անյայտ | — | |
| 21 | Սիմէոնեան Թագուհի | Փշավանց | 6 | — | — | — | |
| 22 | Սարգսեան Հրանուշ | Բուէշ | 7 | — | — | — | |
| 23 | » Նարգիզ | Խամենց | 6 | — | — | — | |
| 24 | » Հրանոյշ | Խամենց | 8 | — | — | — | |
| 25 | » Լուսիկ | Հնդստան | 10 | մայր | Վան | — | |
| 26 | » Նուպար | » | 7 | մայր | Վան | — | |
| 27 | » Կաքաւ | » | 5 | մայր | Վան | — | |
| 28 | Սիսակեան Սաթենիկ | Բուէշ | 16 | մայր | անյայտ | այո | մէկ ոտքը թոյլ |
| 29 | Ռուբինեան Գուրգէն | Վան | 7 | — | — | — | |
| 30 | Վարդանեան Մելքոն | Մոկս | 5 | — | — | — | |
| 31 | Վարդապետեան Կաքաւ | Ուրանս | 5 | — | — | — | |
| 32 | Տէր-Սարգսեան Վարդան | Վան | 13 | — | — | — | |
| 33 | Տէր-Սարգսեան Բենեամին | Վան | 9 | — | — | — | |
| 34 | Փաչիկեան Նշան | Մոխրաբերդ | 7 | — | — | — | |

# ԿԱՐՍԻ ԱՊԱՍՏԱՐԱՆ

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | Աղիզեան Սերովբէ | Վան | 10 | հայր | տաճ. զին. | | |
| 2 | Աւագեան Արուսեակ | Համզաշէխ | 8 | հայր | գերի | | |
| 3 | Աւագեան Քերիմ | » | 9 | » | » | | |
| 4 | Գասպարեան Հայկանուշ | Կոպալ | 10 | — | — | | |
| 5 | Գասպարեան Գրիգոր | » | 6 | — | — | | |
| 6 | Գրիգորեան Լեոն | Մոլլա-Սուլ. | 9 | — | — | | |
| 7 | Գէորգեան Արմենակ | Եաղանու | 10 | — | — | | |
| 8 | Գէորգեան Արմա | » | 7 | — | — | | |
| 9 | Գէորգեան Սիրանուշ | Կարին | 6 | — | — | | |
| 10 | Եղիազարեան Գէորգ | Ոստ.-Քեաղ. | 9 | — | — | | |
| 11 | Ըսկոյեան Եաղութ | Լաթաթու | 8 | -- | — | | |
| 12 | Թումասեան Արշակ | Գարաչոպան | 10 | մայր | գերի | | |
| 13 | Իլխանեան Անդրանիկ | Կոպալ | 9 | — | — | | |
| 14 | Կարապետեան Արուսեակ | Մուշ | 9 | — | — | | |
| 15 | Կոսկոսեան Արամ | Սաթլեր | 9 | մայր | Կարս | | |
| 16 | Կարապետեան Զարուհի | Մուշ | 7 | — | — | | |
| 17 | Կոթիկեան Սալվինազ | Կոպալ | 5 | — | — | | |
| 18 | Ղազարեան Լեոն | Կարին | 9 | մայր | ամուսնաց. | | |
| 19 | Ղազարեան Պիլնազ | Պուշախշէն | 10 | — | — | | |
| 20 | Ղազարեան Գոհար | Քարա-քէշիշ | 10 | մայր | ամուսնաց. | | |
| 21 | Մելիքեան Արշակ | Կոպալ | 8 | — | — | | |
| 22 | Մանուկեան Մարիամ | Բասնոց | 6 | — | — | | |
| 23 | Մուրադեան Տալալ | Բէշութ | 8 | — | — | | |
| 24 | Մուրադեան Սարէ | » | 6 | — | — | | |
| 25 | Մուրադեան Խաչատուր | Կարին-կահ | 8 | -- | — | | |
| 26 | Մուրադեան Մկրտիչ | » | | — | — | | |
| 27 | Յակոբեան Եղիշէ | Նորատենց | 10 | — | — | | |
| 28 | Յարութիւնեան Ազատ | Տապավան | 7 | — | — | | |
| 29 | Յակոբեան Սմբատ | Կոպալ | 9 | — | — | | |
| 30 | Յակոբեան Աշոտ | » | | — | — | | |
| 31 | Պօղոսեան Եղիշէ | Խաչլու | 9 | — | — | | |
| 32 | Սարգիս | Քէօփրիքէօյ | 9 | հայ-մ. | մ. ըԿարս է | | հայրը Թուրք է |
| 33 | Սարգսեան Աստղիկ | Լաթարու | 10 | մայր | կորած | | |
| 34 | Սաֆարեան Արուսեակ | Տապավան | 8 | — | — | | |
| 35 | Սիրունեան Կարապետ | Անոց | 7 | — | — | | |
| 36 | Վարդանեան Սիմէօն | Կէզուք-Սաթ. | 10 | մայր | ամուսնաց. | | |
| 37 | Վարդանեան Գուրգէն | Ղօնջալու | 10 | — | — | | |
| 38 | Քոչոյեան Ֆիդան | Եօնջալու | 6 | մայր | ամուսնաց. | | |
| 39 | Օհանեան Գէորգ | Մուշ | 9 | — | — | | |
| 40 | Օհանեան Արաքսի | Վան | 7 | հայ-մ. | հ. անյայտ | | մայրը Խարան-լու գիւղումն է |

# ՀԱՅ ՕՐԻՈՐԴԱՑ ԽՆԱՄՔԻՆ ՅԱՆՁՆՈՒԱԾ ԱՊԱՍՏԱՐԱՆ

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | Աւագեան Կարապետ | Վան | 11 | չունի | | | |
| 2 | Բարսեղեան Աստղիկ | Ոսկէ-Բակ | 8 | չունի | | | |
| 3 | Բարսեղեան Զարթար | Արփայ | 11 | ունի | | | |
| 4 | Բարսեղեան Եւգինէ | » | 7 | » | | | |
| 5 | Բարսեղեան Մարինէ | » | 5 | » | | | |
| 6 | Բարոյեան Նուբար | Հայոց-Ձոր | 14 | չունի | | | |
| 7 | Բեգլոյեան Ծովինար | Գաւաշ | 11 | չունի | | | |
| 8 | Գէորգեան Վալենտինա | Վան | 6 | հայր | | | |
| 9 | Գէորգեան Գոհարիկ | » | 5 | » | | | |
| 10 | Գէորգեան Արշալոյս | Վան | 13 | ունի | | | |
| 11 | Գէորգեան Ռուբէն | » | 10 | » | | | |
| 12 | Դարմոյեան Վարդանուշ | Շատախ | 14 | մայր | | | |
| 13 | Դարմոյեան Սեդրաք | » | 8 | » | | | |
| 14 | Թամաջեան Վարդան | Վան | 5 | չունի | | | |
| 15 | Թամաջեան Երանուհի | » | 11 | » | | | |
| 16 | Թեմուճեան Գաբրիէլ | » | 7 | » | | | |
| 17 | Կարախանեան Լուսնթակ | Հայոց-Ձոր | 11 | չունի | | | |
| 18 | Կուժիկեան Ձելու | Շատախ | 12 | ունի | | | |
| 19 | Կրգեան Ազաւնի | Շատախ | 14 | չունի | | | |
| 20 | Միրանեան Երանուհի | Վան | 9 | մայր | | | |
| 21 | Մարտիրոսեան Մովսէս | Ակ-Ձոր | 5 | չունի | | | |
| 22 | Մահտեսի-Մանուկեան Սաթ. | Վան | 13 | հայր | | | |
| 23 | Մանուկեան Սաթենիկ | Բայեարաք | 10 | չունի | | | |
| 24 | Յարութիւնեան Թոմաս | Վան | 12 | մայր | | | |
| 25 | Յարութիւնեան Արեգնազան | » | 6 | » | | | |
| 26 | Յարութիւնեան Սիրանոյշ | Վան | 8 | մայր | | | |
| 27 | Նիկողոսեան Լուսնթակ | Վան | 11 | չունի | | | |
| 28 | Նիկողոսեան Նոյեմզար | » | 8 | » | | | |
| 29 | Փողոսեան Իսկուհի | Վան | 12 | չունի | | | |
| 30 | Սահակեան Խաչիկ | Արճէշ | 7 | չունի | | | |
| 31 | Սարոյեան Գասպա | Հայո | [illegible] | [illegible]ի | | | |
| 32 | Սահակեան Վաղարշակ | Սալմաստ | 10 | մ[illegible]ր | | | |
| 33 | Սահակեան Հրանտ | » | 8 | » | | | |
| 34 | Սահակեան Սուրէն | » | 6 | » | | | |
| 35 | Ստեփանեան Յովսէփ | Վան | 8 | մայր | | | |
| 36 | Խոշաբրեան Բենեամին | Վան | 12 | հայր | | | |
| 37 | Խոշաբրեան Ներսէս | » | 9 | » | | | |
| 38 | Խաչիկեան Սիրանոյշ | Քէմախ | 8 | մայր | | | |
| 39 | Խելարեան Մարգարիտ | Ախօրեան | 12 | չունի | | | |
| 40 | Խուջէ Գրիգոր | Բաղէշ | 9 | հայր | | | |

(Կը շարունակուի)

Տպ. Ն. Աղանեանի